որն ցեղ Օձանդիկ ազգին՝ զՄարացն առեալ, անգէն ոչ միայն դրացի էր, այլ եւ ընդմտեալ իսկ միջամուխ յաշխարհն մեր ձգէին սահմանք նոցա, մանաւանդ ի բուն հին ժամանակն, թող զբազմամբոխ գաղթականութիւնս նոցա որ երբեք երբեք ի Հայոց աշխարհին սփռեցան։ Նոքին իսկ աշխարհագրական երեսք երկրին, գետոցն եւ դղեկաց եւ քաղաքաց անուանք յայտ առնեն զընակչացն սերտ հաղորդութենէ ընդ Արիական ազգին, այնպէս զի զնոյն երեւս ունին բուն նախաւոր կողմանք Հայաստան աշխարհին, զոր երեւելի նահանգք ցեղից նոցա ունէին. կենդրոն իսկ նահանգաց նոցա է որպէս եւ մերոյն՝ Երասխ եւ Կուր անուն գետք. նահանգն Պարսկաստան՝ Երասխն եւ Կուր գետովք զրեթէ մեւս եւս Հայաստան է, որպէս Հայաստան՝ մեւս եւս Պարսկաստան. ունի եւ Մարաստան Կուր գետ, ունի եւ աշխարհն Բակտրիացւոց Երասխ գետ (Աքսոս), որոյ գոգցես յաջորդութիւն եւ աղխումն իսկ էր ի հնումն՝ մերն Երասխ, թող եւ զԵրասխն գետ Սոգդիացւոց նահանգին։ Աչ դոյզն մտադրութեան արժանի է եւ նոյնութիւն քաղաքացն անուանց ի —կերտ, —շատ, —անդ, —ապատ եւ այլոց եւս նոյնպիսեաց որք առհասարակ յԱրեաց լեզու են։

2. Որպիսի ինչ մերձաւոր դրացութիւն երկրին է՝ նոյնպիսի եւ լեզուին ազգականութիւն. չիք այնպիսի պատեհ տեղի ի կարգել զհայերէն լեզու ի կարգի անդ լեզուացն՝ բայց գտնել զնա առընթեր զանդիկ, պահլաւիկ, (հին) պարսիկ բարբառոց Արեաց լեզուին, որոց անհամար իսկ անուանք են հասարակաց ընդ հայերէն լեզուի, եւ այն յանուանս եւս որ ամենեւին էական ի մարդկեղէն խօսս իցեն, որովք իբրեւ քարք իսկ առ միմեամբք երեւին։ — Նոյնպէս եւ ի կրօնսն եւ ի կարծիս որ զաստուածութենէ է։ Այնպէս իսկ սովորութիւն լեալ է կարծել թէ ի բուն հին ժամանակն առանց պաշտամանց ինչ եւ աստուածխօսութեան լեալ իցեն Հայք, եւ յետուստ ուրեմն պաշտօն ինչ յունական դից գտեալ մուտ առ նոսա ըստ դիպաց իմն. այսպէս եւ Վաղարշակ ի սկզբան մտի թագաւորութեանն իւրոյ (յամի իբրեւ 190 յառաջ քան զՔր.) առանց մեհենից եւ պաշտամանց զազգն գտեալ՝ խառնակութեան իմն զիւրն համարի[1], այնու զի վաղ իսկ յառակադոյն պաշտօն Արեաց ազգին որ ըստ բուն զրադաշտական օրէնացն էր՝ եղծեալ եւ խանգարեալ եւ խառնեալ պաշտամամբք նուաճելոց ազգացն էր, եւ այնպէս մոռացեալ։ Արդ այն յառակադոյն պաշտօն զանդիկ վարդապետութեանն հանդերձ այլովք եւս տուրեւառիկ փոփոխմամբք՝ ի դէպ էր եւ մերոցն բուն հին նախնեաց հաղորդել, առ որս չիք տեսանել զբաբելոնական կամ զԱսորւոցն պաշտամունս կամ պատկերս դից եւ այլ եւս նոյնպիսիս. անուանքս իսկ Արամազդ, Հրեշտակ, դեւ, դժոխք[2],

1 Խոր. Ա. Գլ. Թ. եւ 48։ 2 Տես ի խմբարհ համար 74։

զհաղորդութենէ կրօնական տեսլեանց զքաղաքական վարդա-պետութեանն յայտ առնեն՝ որ յետ եբրայական վարդապետու-թեանն յստակագոյն քան զամենայն աստուածխօսութիւնս էր յայնժամ։ Իսկ յետոյ եւս յորժամ Պարսիկք առ համաշխարհա-կան պետութեամբն ընկալան ի յաւակ պաշտօնն իւրեանց զգիտ յունական աստուածաբանութեանն, նոյն անցք եւ առ մեզ անցին. Անահիտ եւ Տիւր անուանք (Արտեմեայ եւ Հերմեայ կամ Ապողո-նի) հասարակաց Արեաց եւ Հայոց անուանք են՝ որովք դարձեալ միաբանական իմն հաղորդութիւն Հայոց ընդ Արեաց յայտ առնի։

3. Այլ առաւել եւս պայծառագոյն քաղաքային բախտ մեր յամենայն ընթացս պատմութեան ընդ նոցա բախտին կից ընթա-նայր. ընդ Մարաց եւ ընդ Պարսից եղեն նահանգ Ասորեստա-նեայց պետութեան, ընդ Մարաց կործանեցին զԱսորեստանեայցն պետութիւն, ընդ Պարսից եւ ընդ Մարաց քակեցին զբաբելա-կան-քաղդէական պետութիւնն, ընդ Պարսից անկան ընդ մա-կեդոնական պետութեամբ, զերթէ ի նմին ժամանակի ընդ նոսա ազատեալ ելին յիշխանութենէ պետութեանն նոցա, եւ եղեն թագաւորութիւնք երկու ընդ միով Պարթեւ-Արշակունի հարստու-թեամբ. որ ինչ քաղաքային յօրինուածութիւն էր ըստ զե-նուորական եւ ըստ ազնուականացն կարգի, էր եւ ի Հայոց աշ-խարհին՝ յորում համօրէն աշխարհն ի նախարարութիւնս էր բա-ժանեալ. մինչեւ առ Սասանեանսն թուի իմն եւ պատուար կայր Հայոց թագաւորութիւնն ի մէջ Հռոմայական եւ ի մէջ Արեացն տէրութեան, մերթ սոցա բուռն ազդեցութեանն զօրանալով եւ մերթ նոցա։ Մինչեւ ապա ուրեմն քրիստոնէութեամբն ամենե-ւին բաժանեալ յԱրեացն աշխարհէ՝ ապրէր յետ մեծամեծ հալա-ծանաց ի վտանգէ ընկղմելոյ ի մէջ բազմամբոխ ազգին Արեաց. ուստի եւ քրիստոնէութեանն շնորհ է այժմու գոյութիւն ազգիս։ —Նմին իրի յառաջ քան զքրիստոնէութիւն՝ ազգն զանձն մի ինչ բոլոր ընդ այլ ցեղից արիական ազգին համարէր, եւ այնպէս իսկ էր յօրինուած քաղաքականութեամբ նորա. յայն սակս չմարթի եւ չպարտի իսկ ոք պահանջել ի հին ժամանակէ ազգիս յառաջ քան զքրիստոնէութիւն՝ ուրոյն առանձինն գոյութիւն, այլ հասա-րակաց Արեաց ազգին գոյութիւն՝ նորա եւս համարեալ էր. ուստի եւ ոչ գիր իսկ գոյր առանձինն, այլ պարսկական գիրն յարքունիսն եւ ի դաշանց գիրս արկանէր ի կիր[1]։

Յայսմ ամենայնէ յայտ է թէ ընդէր բազում անգամ յա-նուն Մարաց եւ Պարսից կամ Պարթեւաց զմեզ կոչեցին արտա-քնոցն մատենագիրք, եւ երբեմն նոյնս իսկ ընդ նոսա համարեցին։ —Ամենայն իսկ ճառս՝ եւ զայն քաջ ցուցանէ թէ այս իսկ է կարգ եւ դիր հնոյ պատմութեանն Հայոց՝ ի պատմութեան ազգաց։

1 Խոր. Ա. Գլ. Գ. եւ 21։

# Է

## Հովիտ Եփրատայ եւ Տիգրիս գետոց — Բաբելոնիա եւ Ասորեստան.

## 2300 — 538:

## 46

Աղբիւրք. Բերոսոս (յամի իբրեւ 250 յառաջ քան զՔր.) քուրմ Բելայ որ ի յիշատակարանացն Ասորեստանեայց եւ Բաբելացւոց հան զպատմութիւնն՝ որոյ հատուածք եւեթ կան. Աբիւդենոս (անյայտ ժամանակաւ). Մար Աբաս (յամի իբրեւ 190—140 յառաջ քան զՔր.), երկոքին նոյնպէս ի նոցին աղբերաց որ բազում ինչ իւիք մնացեալ են գրոցն պատմութեան ի գիրս Թագաւորացն եւ Մնացորդաց եւ Մարգարէիցն: — Ի Յունաց անտի Կտեսիաս վասն Ասորեստանեայց պատմութեան յառաջին գիրսն. Կղեարքոս Կնիդացի (յամի իբրեւ 400 յառաջ քան զՔր.) որոյ հատուածքն կան առ Դիոդորոսի Սիկիլացւոյ՝ որ մնացեալն է ընդ նմա բազում իւիք հակառակ առաջնոյն: — Օգնականք են՝ ի Գաղղիացւոց ականատեսականն ճանապարհորդք Փուրման, Փոկոկ, ու Բոթա, եւ մանաւանդ Հէրէն գերմանացի:

ԵՐԿԻՐՆ Բաբելացւոց (որ յառաջին գիրս Հնոց կտակարանացն Սենաար կոչի[1], եւ ի վերջին գիրսն առաւել յաճախագոյն՝ Երկիր Քաղդէացւոց[2]) է երկիր ինչ ի ստորին սահմանս Եփրատայ եւ Դկղաթ (Եփրատ եւ Տիգրիս) գետոց, որ ի հիւսիսոյ հատանէր զՄարական Որմն՝ որ բաժանէր զնա ի Միջագետաց, ի հարաւոյ ցծոց ծովուն Պարսից, իսկ յարեւմտից եւ յարեւելից ունէր սահմանս զորս չմարթի ճշդիւ որոշել: Հին բնակիչք նորա արուեստիւք եւ աշխատութեամբք ապրեցուցին զերկիրն յողողելոյ գետոցն, որք յորդեալ ծորացուցանէին զնա, յորժամ ձիւնք բարձրաբերձ լերանց Հայոց աշխարհին հալէին. Ջրմղօք եւ այլովք եւս նոյնպիսեօք տարեալ զջուր գետոյն այսր անդր՝ լցին զպակասութիւն անձրեւացն, որ դուն ուրեք իջանէին, որով եւ բուսանէին արմտիք բազում յոյժ, կենդրոս կամ դոնդ[3] եւ կնճիթ. բայց թզենի, ձիթենի եւ որթ չաճողէին[4]. այլ ընդ այնր առատ էին արմաւենիք, յորոց պտղոցն հանէին եւ ամբրաւօղի եւ մեղր: — Չէր երկիրն առատաբեր ի փայտահատութիւն եւ ի քարահատութիւն, բայց ընդ այնր մատուցանէր բնութիւնն հող ինչ պատեհ ի նիւթ թրծուն աղիւսոյ՝ զորոց կէսս յարեւու ցամաքեցուցանէին եւ զկէսս ի հնոցս, եւ լինէին պինդ անհնարին որպէս ցայժմ մնացորդքն ցուցանեն յետ այնչափ անչափ դարուց. առ նմին մատուցանէր երկիրն փոխանակ շաղախոյ՝ նաւթ ինչ առատ յոր խառնէին ի չամբից ծորուցն՝ եղեգունս եւ կամ կնիւն կամ տերեւս արմաւենեաց, որպէս ցայժմ համեմատ բանիցն Երոդոտայ՝ յաւերակսն նշմարի:

Գլխաւոր քաղաք աշխարհին Բաբէլ կամ (ըստ Յունաց) Բաբիլոն, էր մի ի կարի իսկ հոյակապ եւ ի մեծամեծ քաղաքաց

1 Ծնն. ԺԱ. 1:

2 Երեմ. ԻԲ. 25. ԻԴ. 25. անդ եւ Ծ. 1, 8, 25: Եզեկ. ԺԲ. 13. ԻԳ. 15:

3 Panicum miliaceum.

4 Հերոդ. Ա: Տես եւ Քսենոփ. Անաբ. Բ:

ժամանակացն առաքինոց, պատկեր իմն Հռոմ քաղաքի[1]։ Էր շինեալ չորեքկուսի. մի մի ի կողմանցն էր 120 վտաւան կամ երեք երկրագրական մղոն, որպէս զի լինել շուրջանակի 480 վտաւան կամ 12 երկրագրական մղոն։ Բաց յապարանից եւ ի մեհենից կային եւ բուրաստանք եւ անտառք եւ մարգք յընդարձակութեան անդ, զորով պատ առեալ կային որմունք յօրինեալք ի թրծուն աղիւսոյ մածուցելոյ կպրով[2]. բարձրութիւն որմոցն էր 200 գիրկ եւ թանձրութիւն 30 գիրկ, եւ պահէին զնա 250 աշտարակք բարձրաբերձք, եւ էին նորա դրունք պղնձիք՝ 100[3]։

Բաժանէր քաղաքն ի հին Բաբիլոն՝ յարեւմտեան եզերն Եփրատ գետոյ, յորում կայր աշտարակագործ մեհեանն Բելայ կամ հնագոյն դղեակն արքունական, թերեւս նա է հին բուրգնն Բաբելոնի, որոյ աւերակք կան ցայժմ (Պիր Նիմրոդ անուն). յութերորդում եւ ի վերջին դստիկոնին էր սրբագոյն տեղի մեհենին յորում չգոյր պատկեր, այլ միայն սեղան մի ոսկի եւ գահոյք վասն դիցն։ — Ի Նորն Բաբիլոն, որ յարեւելեան եզերն Եփրատու շինեցաւ ի Նաբուքոդոնոսորայ վասն ամրանալոյ յերեսաց Մարացն, եւ ունէր հաղորդութիւն ընդ հնոյն վիմագործ կամրջօքն արկելովք ի վերայ Եփրատու։

Դէմ ընդդէմ հնոյ արքունական դղեկին կանգնեալ կայր յարեւմտեան գետեզերի անդ արքունական դղեակն Նաբուքոդոնոսորայ[4] հանդերձ անուանելովք կախաղանաւոր բուրաստանօք, զոր վասն կնոջն իւրոյ հովասուն ի Մարաց աշխարհին անելոյ՝ կազմեաց Նաբուքոդոնոսոր[5]։ — Ինչ ինչ ի շինուածոց անտի մարթի թէ ի Շամիրամայ իցէ կազմեալ (ուր Կտեսիաս առ Դիոդորի Բ. 7. զամենայն իսկ զքաղաքն ի նմանէ շինեալ պատմէ). բայց մեծ մասն նոցա յետոյ ուրեմն առ Նաբուքոդոնոսորաւ յօրինեցաւ ըստ Դանիէլի[6]. որում միաբանէ եւ քաղդէական մատենագիրն Բերոսոս, երկրորդ շինիչ զնա եդեալ[7], այլ բուն առաջին հիմնարկութիւն նորա անդ ուրեմն ի սկզբան ժողովելոյ մարդկանն ի Սենաար եղեւ[8]։

## 47

Ի քաղաքէ աստի առ սկիզբն թագաւորութիւնն Բաբելացւոց, հնագոյն քան զամենայն թագաւորութիւնս, որպէս գիրք յայտ առնեն՝ յորժամ ասիցեն եթէ “Քուշ որդի Քամայ ծնաւ զՆեբրովթ, նա սկսաւ լինել որսորդ սկայ առաջի Տեառն„։ Սա յ

1 Տես Բ. Պետր. Ե. 13։
2 Ծնն. ԺԱ. 3։ Հերոդ. Ա. 179։
3 Տես Եսայ. ԽԵ. 2։ Երեմ. ԾԱ. 12, 53, 58։
4 Բերոսոս եւ Դիոդոր. Բ. 8։
5 Բերոսոս առ Եւսեբ. Քրոն. Ա. Եշ. 68—70։
6 Դան. Դ. 7։
7 Տես առ Եւս. Քրոն. Ա. Եշ 68—96։
8 Ծնն. ԺԱ. 2—9։

ինքն նա եղեւ այր քաջ եւ զօրաւոր եւ առաջին երախտաւոր ժամանակակցաց իւրոց, զի հալածեաց զգազանս վայրի, եւ յայն սակս իսկ մեծին մարդիկ ընդ պաշտպանութեամբ նորա եւ ծանեան զնա թագաւոր, եւ նորա օգնականութեամբ ամփոփեաց նա եւ զայլսն եւս մտանել ընդ իշխանութեամբ եւ ձգեալ տարածեաց զիշխանութիւնն: — Զնմանէ ասեն առաջնորդ լինել աշտարակագործութեան ի Բաբելոն, եւ ըստ հաստատակաց հաւանութեան կարծեաց Նեբրովթ հսկային այն՝ զոր ոմանքն ի պատմագրացն Բելոս կոչեն, որ առ նորին պաշտպանօք աստուածացեալ՝ առաւել առաւել Բէլ կամ Բահաղն անուամբ ի բազում ազգաց առնոյր պաշտօն: Նեբրովթ շինեաց եւ զԱրեքղ քաղաքս (զԱրեքոսս), զԱքքադ (Թերեւս զՄծբին) եւ զՔաղանէ (զՑեսփոն), յերկրին Սենաար[1]:

Նորագոյնք ի պատմագրաց զՆեբրովթ հսկայն եկեալ գաղթականութեամբ իւրով յԵթովպացւոց աշխարհէն եւ բերեալ զպաշտօնն Բելայ ի Բաբելոնաստան, եւ նուաճեալ զբնակիչս երկրին, համեմատ ընդ Խորենացւոյն[2]:

Գլխաւորագոյն ծաղկելոյ բնակչաց Բաբելոնացւոց աշխարհին պատճառք՝ էին յաջողագոյն դիր աշխարհին, որ իբրեւ կեդրոն իսկ էր բուն հին համաշխարհական վաճառականութեան, եւ դիւրին հաղորդութիւնն ի վերայ մեծամեծ ջրերէն ճանապարհացն Եփրատ եւ Տիգրիս գետոց, զայնց ճանապարհաց առեալ որք ի Հնդկակայ՝ ի կողմն ծոցոյ ծովուն Պարսից եւ անտի եւս ձգեալ՝ զառաջին վաճառական նաւահանգս հնոյն աշխարհի՝ զՓիւնիկս յայսմ կողմանէ, եւ զԱրաբիս եւ զԵթովպիս յայնմ կողմանէ ընդ միմեանս կապէին: Դարձեալ՝ զի աստ ուրեմն իբրեւ ի գլուխս սահմանաց Սեմական եւ Արիական աշխարհաց՝ այլ եւ այլ ազգք վաղ եւս կարգեալք եւ յօրինեալք ըստ իւրաքանչիւր կարգաց եւ յօրինմանց առընթեր միմեանց՝ զմտաւոր ջան եւ զհնարագիտութիւն իւրեանց իւրաքանչիւր՝ ազգհական այլ եւ այլն օրինակաւ մատուցանէին յառաջ: Եւ զորօրինակ ըստ գրոցն պատմութեան առառաջին առ միմեանս բնակեալ էին ազգքն առաջինք, եւ ապա անտի յայլ եւ յայլ կողմանս ցրուեցան, նոյնպէս աստ իսկ ի Բաբելոնիա է կէտն՝ ուստի նախ հրահանգք կրթութեանն ելին, ոչ միայն վասն սեմական աշխարհաց յարեւմուտս՝ այլ եւ վասն արիական ազգաց յարեւելս: Քանզի քրմականն յօրինուածք որ ի կարգս եւ ի սահմանադրութիւնս արիական ազգացն երեւին, առանձինն ընդ օրինակ դպրութեան նոցա՝ այս ինքն բազմապատիկ եւ բազմակերպ սեպաձեւն նշանագիրք, դարձեալ արուեստն նոցա եւ նշանակք

1 Ծնն. Ժ. 8 — 12:

2 «Մեսրայիմ է Մեծրայիմ որ խնդրի Եգիպտոս, եւ բազումք ի ժամանակագրաց զՆեբրովթ՝ որ է Բէլ, Եթովպացի դնելով՝ հաւանեցուցին զմեզ այսպէս հաւատալ լինել, յաղագս բնակութեան սահմանացն ընդ Եգիպտոսիւ»: Խորեն Ա. Գլ. Ե. եւ 24:

1 8

Բայց շինիչ եւ տէր աշխարհին եղեւ Նիմրովթ կամ Նեբրովթ առաջնորդ տէրութեան Բաբելացւոցն. նա շինեաց զՆինուէ, զՌեհոբովթ քաղաք եւ զմեծ քաղաքն Ռեսեն[1]: — Արտաքինք ի մատենագրաց՝ Նինոսի համարին շինեալ զՆինուէ (որպէս Նին Նուէ՝ Նինոյ բնակութիւն), բայց թուի թէ շփոթեալ խառնակեն բնի զգործս Նեմրովթայ ընդ գործոյն Նինոսի: Այս գլխաւոր քաղաք Ասորեստանեաց աշխարհին կայ առ Դկղաթ գետով շինեալ երկայնաձեւ չորեքկուսի՝ 4 մղոն յերկայնութիւն եւ 2½ ի լայնութիւն, եւ շուրջանակի 15 մղոն. պարիսպ նորա ի բարձրութիւն 100 ոտն եւ ի թանձրութիւն 10. եւ 1500 աշտարակք եւ մահարձանք պահէին զքաղաքն սկայագործ[2]: — Համօրէն Ասորեստան բաժանէր յարեւմտից կուսէ ի Միջագետաց Դկղաթ գետով, իսկ ի հարաւոյ հատանէր ցերկիրն Բաբելոնացւոց, յարեւելից մինչեւ ցՄարս եւ ի հիւսիսոյ ձգէր ի սահմանակողմն Հայաստան աշխարհին: Հիւսիսային դաշտավայրք առ Տիգրիս գետով ռոգանին ի բազում խաղից եւ ի ջրմղաց, եւ յայն սակս իսկ պտղաբերք են: — Որպէս կրօնք նոյնպէս եւ լեզու եւ ազգն իսկ Ասորեստանեաց կիսով յարիական ցեղէ էին, առեալ ի դրացի աշխարհէն ի Բաբելաստանէ եւ յԱսորւոց. եւս ի վաղուց բազմապատիկ մասունք մտեալ էին ի նոսա:

Ժամանակագրութիւն Ասորեստանեացն կարօտ է քննութեան՝ զոր ի դէպ է համառօտիւ վճարել այսպէս:

1. Կտեսիաս (մօտ յամի 400) գրեաց պարսկական պատմութիւն ի 23 գիրս, յորոց առաջին 6 գիրք բովանդակեալ ունին զԱսորեստանեացն պատմութիւն. զհետ նորա չդքան բաց յոմանց՝ ամենայն յոյն եւ հռոմայեցի պատմագիրք, որպէս Դիոդորոս Սիկեղացի՝ յորմէ ունիմք զմեծ մասն հատուածոցն Կտեսեայ, Կաստոր Հռոդացի (որ է աղբեւր եկեղեցական ժամանակագրացն Ափրիկանեայ, Եւսեբեայ՝ յորմէ թուի ինչ ինչ առեալ եւ Խորենացւոյ), Յուստինոս եւ այլք:

Ըստ պատմէ Կտեսիաս այսպէս. Անդէն յամի 2176 յօրինեալ կազմեցին աշխարհակալութեամբ Նինոս եւ Շամիրամ զհամաշխարհական տէրութիւնն Ասորեստանեաց: — Զնինոս առաջնորդ այսր տէրութեան ոչ ի վերայ Բաբելացւոցն եւեթ, այլ եւ ի Հայոց, ի Մարաց եւ ի Բակտրիացւոց վերայ պատմէ տիրեալ, եւ թագաւորել նմա ամս 50: Նորին կին Շամիրամ՝ որ պատերազմասէր մտօքն եւ իմաստութեամբ եհաս թագաւորութեանն, հնարեցաւ օգնականութեամբ մեծամեծացն իւրոց մերժել զորդի իւր զՆինուաս (Զամէս) ի թագաւորութենէն, եւ ի վերայ աշխարհակալութեանց առն իւրոյ, ասէ, հատանել պատերազմաւ մինչեւ ցկողմանս Եգիպտացւոց եւ Եթովպացւոց, եւ յետ այնորիկ յաճախագունդ զօրօք խաղացեալ ի վերայ Հնդկաց աշխարհին՝ եւ անդ ի պարտութիւն մատնեալ. եւ յետ պարտութեանն՝ իւրոյին որդի Նինուաս զնա սպանանէր յետ թագաւորելոյ նորա ամս 24: Այնուհետեւ մի ըստ միոջէ բազում թագաւորք դատարկք եւ թուլամորթք զմիմեանս պայազատեն ամս 1300 (որոց թիւ համարոյ եւ անուանք

1 Ծնն. Ժ. 11 — 12: Միքէ Ե. 6:    2 Տես Յովնան Գ. 3. Դ. 11:

պղատոնեակ ի բաղդնոց պատմելն) մինչեւ ցՍարդանապաղոս (կամ Թօնոս Կոնկողերոս)։ Յարեան ի վերայ սորա Վարբակէս կուսակալ Մարաց եւ Բեղեսիս քուրմ կամ կուսակալ Բաբելացւոց, խաղացին զօրօք ի վերայ քաղաքին Նինուէացւոց. Թէպէտ եւ հարան եւս երկիցս եւ խորհէին յետս կալ, այլ յետ օգնականութեան ուստեք հասանելոյ, պաշարեցին միւսանգամ զքաղաքն։ Իբրեւ յերրորդ ամի պաշարմանն յորդեաց գետն Դկղաթ, յարձակեալ մտին ի քաղաքն. բայց արքայ Սարդանապաղոս արկ ի հրայրի հուր յարքունիսն եւ այրեցաւ հանդերձ կանամբքն եւ գանձուքն։ Այսպէս ըստ Կտեսեայ եւ ըստ այնոցիկ որ զհետ չոքան նորա, յամի 876 (= 2176 — 1300) Ասորեստան հանդերձ գլխաւոր քաղաքաւն Նինուէիւ վկանդեալ ի Մարաց՝ լինի աներեւոյթ ի պատմութենէ։

2. Բայց սակայն յորժամ Կտեսիան անհետ բարձեալ ի միջոյ զԱսորեստանեաց պետութիւնն տայ, անգէն ի նմին ժամանակի ի բուն ծաղկի եւ ի բարձրութեան զնա ցուցանէ պատմութիւն գրոցն սրբոց՝ յորս չգան ամենեւին ինչ նշմարանք այսպիսի համաշխարհական տէրութեան յայսչափ հին ժամանակի, եւ այսպէս կանուխ կործանման նորա։ Զի ըստ գրոցն՝ Ասորեստանեացն թագաւորութիւն, որոյ հիմնիչ փոխանակ Նինոսի՝ Նիմրովթ է, հաստատեցաւ ի Բաբիլոնէ, ուստի քաղաքս բազումս առ վերնակողմամբքն Տիգրիս եւ Եփրատ գետոց, յորոց միան մի երեւելին միւսանգամ Նինուէն եւ այլս յԺերորդ գլուխ[1]. Եւ ամենայն պատմութիւնք Կտեսեայ որ վասն առաւել քան զհազարամեան ժամանակ տիրելոյ Ասորեստանեաց ի վերայ Պաղեստինացւոց, Ասորւոց եւ Փիւնիկեցւոց են՝ եղծանին ի ճշմարտին եւ ի ժամանակակից պատմութեանց եւ ակնարկութեանց՝ որ զայնց աշխարհաց ի գիրս սուրբս կան։

Նոյնպէս եւ երեւելիք յարտաքին պատմագրաց. Հերոդոտոս ոչ այնպէս վաղ բառնայ զԱսորեստանեաց տէրութիւն ի միջոյ, եւ ոչ այնպէս կանխագոյն տարածանէ զիշխանութիւն նոցա ի վերայ աշխարհացն այնոցիկ որ յիշեցան. այլ յամէ 1234 ց714՝ ամս 520 տայ իշխել նոցա յայսմ կողմանէ մինչեւ ցփոքր Ասիա, եւ յայնմ կողմանէ մինչեւ ցծովն մի հիւսիսային եւ արեւելեան Ասիոյ[2]։ Այլ առաւել ճշմարտագոյնս բաբելացի պատմագիրն Բերոսոս. ըստ սմա՝ թագաւորեցին թագաւորք Ասորեստանեացն ի վերայ Բաբելոնի ամս 526, յամէ 1296 մինչեւ ցամն 770 նախ քան զՔրիստոս առանց ընդհատ ժամանակի։ Թէպէտ եւ ջանացին յայնմ հետէ Բաբելացիք խզել զլուծն Ասորեստանեաց եւ յաջողեցաւ իսկ երբեմն, սակայն նուաճեցան միւսանգամ[3], եւ Ասորեստանեայք առ Սենեքերիբաւիւ եւ Ասորդանիբաւիւ (որ ծանօթ իսկ են եբրայական պատմութեանն) յընթացս Էերորդ դարուն հասին աշխարհակալութեամբ ի Փիւնիկէ, ի Հրէաստան եւ յԵգիպտոս[4]։ Այսպէս եւ որ ի նոցին աղբիւրաց զպատմութիւնն ժողովեաց՝ մերն Մար Աբաս՝ զկործանումն Ասորեստանեացն պետութեան տայ ուրեմն առ հարքն Նաբուքոդոնոսորայ գնէ (յամի իբրեւ 610 նախ քան զՔր.)[5] այնպէս զի յետ լինելոյ Պարուրայ օգնական իշխանին Մարաց ի կործանումն տէրութեանն այնորիկ՝ յաջորդն Պարուրայ՝ Հրաչեայ պատահէ առ Նաբուքոդոնոսորաւ[6]։ Ուստի եւ ոչ առ սոսա կան նշմարանք համ-

1 Ծնն. Ժ. 11։ Միք. Ե. 5։ Յուդ. Գ.։
2 Հերոդ. Ա. 95. տես եւ 72, 102։
3 Անդ։
4 Անդ։
5 Խոր. Ա. Գլ. ԻԱ։
6 Խոր. Ա. Գլ. ԻԲ. «Հրաչեայ... առ

աշխարհական տէրութեանն կանխեաց եւ որոց նորին զհետ չոգան, եւ կործանման տէրութեանն Ասորեստանեայց յառաջ քան զծագելոյ ժամանակին զոր ընծայեն նմին գիրք․ այլ նմին հակառակ որպէս ի գիրս նոյնպէս եւ առ սոսա պատմի ընդդիմակացն այնր ամենայնի ։

Այլ սակս թողելոյ զկանոնական պատմութիւնն եւ զաւանդական հայթայթանս վերջին մատենագրաց միաբանելոյ զնա ընդ գրոց պատմութեան, այս ինչ՝ գնելով երկուս Ասորեստանեայց տէրութիւնս, մի հին տէրութիւն Ասորեստանեայց եւ մի նոր (զորմէ 6 գիրք Ասորեստանեայց կատարելոյն պատմութեան՝ զոր ունի Կտեսիաս, ոչ ինչ ամենեւին յիշատակեն), պարտ է հայել հաստատուն՝ յառաջնորդութիւն գրոց սրբոց՝ ի կիր արկեալ յամբողջութիւն՝ եւ զպատմութիւնս պատմագրացն զորս յիշեցաք ։

1․ Ընթերցինք ի պատմագրաց զՆինոս եւ զՇամիրամ դնեն հաստիչս այսր պետութեան․ այլ նորագոյնք ի մատենագրաց զերկոսին եւս համարին առասպելական ինչ գիւտս անուանց, զՆինոս փոխանակ քրմական իշխանութեան ըստ Բելեան պաշտաման, եւ զՇամիրամ փոխանակ քրմական իշխանութեան Միհրական պաշտաման[1], եւ Նինուաս իցէ առաջին աշխարհական թագաւոր՝ ի քրմացն իշխանութենէ զերծեալ ։ Սակայն թէպէտ զայնչափ կանխութիւն ժամանակի (2000 նախ քան զՔր․) եւ զայնչափ ընդարձակ աշխարհակալութիւնս (յԵգիպտոսէ ց Հնդիկս) որ զնոցանէ պատմի, չիցէ պարտ ամենայնիւ ճշմարիտ համարել, բայց թուի թէ կայ զրեթէ անընդդիմակաց իմն հաստատութիւն վասն գոյութեան անձինն Շամիրամայ, եւ չափաւոր ինչ աշխարհակալութեան եւ մեծագործ ինչ շինութեանց[2] որոց յիշատակ հանդերձ անուամբն Շամիրամայ ի գիրս[3] եւ ի բերանս բնակչաց կողմանցն այնոցիկ ցայսօր այնչափ յաճախութեամբ յածի, որչափ անուն եւ յիշատակ Աղեքսանդրի (Իսքենտէր), թող զզրոյցս ազգին մերոյ ի բուն հին ժամանակս[4] ։

Սակայն այս առանց իրիք հակառակութեան է թէ մօտ ուրեմն յամի 1300 յառաջ քան զՔր․ իշխանք կամ թագաւորք Ասորեստանեացն ընդարձակեցին զսահմանս տէրութեան իւրեանց ի հարաւոյ անդր իսկ ի վերայ տէրութեան Բաբելոնա-

[illegible], ասէ, կերպեալ [illegible] Բաբելոնացւոց,,։ Ապա նա [illegible] Խորենացւոյն առա՝ [illegible] Մար Աբասայ նշանակէ, որպէս յայտ է [illegible] հանդամանութենէ է ։

1 Ըստ Կտեսեայ առ Դիոդ․ Սիկ․ Բ․ 20․ պատմի զՇամիրամայ թէ պաշտէին զնա Ասորիքն իբրեւ Դերկետոյ աստուած, առասպելաբանելով եւս զնմանէ թէ յաղաւնի փոխեցաւ ։

2 Տես առ Խորենացւոյ Յաւ․ Զ․ Մատն Ա․ եւ 239, ուր գտանին [illegible] շինութիւնք նորա ի [illegible] ի Հերոսս, ի Համատան (յԵկբատանա), եւ անդ կարգաւ [illegible] իսկ Կորդուաց (Քուրդիստան) ի հին Ասորեստանի, մի-ջեւ այժմ իսկ ցուցանի [illegible] ի կողմանս Հայոց աշխարհին ։

3 Մար Աբաս եւ Խորենացի [illegible] ․ Տես եւ առ [illegible] ․ ծՁ․ 787 ։

4 "Առ այսոքիւք՝ եւ աշխարհիս մերոյ [illegible] Ասորեստանին (զՄար Աբաս) [illegible] Շամիրամայ եւ [illegible], այլ եւ ի մէջ [illegible] ի [illegible] Շամիրամայ ի [illegible] ։ Այլ թէ [illegible] եւ Շամիրամ [illegible],,։ Խոր․ Դիրք Ա․ Գլ․ ԺԸ․ եւ 89 — 90 ։

խորհեցաւ Սենեքերիմ մեծ ինչ խորհուրդ՝ դնելոյ անդ շահաստան վաճառականութեան ըստ նմանութեան քաղաքին Բաբելոնացւոց, եւ եթէ այն կատարէր, ապա այնուհետեւ Ասորւոցն վաճառականութիւն փոխանակ ի շահաստանս Փիւնիկեցւոց ընթանալոյ որպէս ցայժմ լինէր, անդ յամենայն կողմանց ժողովէր, եւ այնպէս ծովական վաճառականութիւնն անցանէր ի ձեռս Ասորեստանեայց՝ որով եւ պատրաստութիւն իսկ լինէր կործանելոյ կամ նուաճելոյ զվաճառական ազգութիւնս Փիւնիկեցւոցն: Նոյն իսկ շինեաց Սենեքերիմ զԹարսոն եւ զԱնքիալէ քաղաք ինչ կրկին որոց ընդարձակութիւն եւ ձեւ եւ օրինակ ըստ Բաբելոնի էր, ընդ մէջ անցանելով Կիւդնոս գետոյ՝ որպէս գունակ Եփրատանայ ընդ մէջ Բաբելոնի[1]: Եւ յետ մահուն Սենեքերիմայ որ ըստ միաբանն պատմութեան գրոց եւ Բերոսոսի[2] սպանանի յիւրոց որդւոց իւրոց, եւ զաւազանն եւս որդւոցն նորա ընդ միմեանս հանգերան ի դերեւ: Թէպէտ եւ առաւելագէք եւ յետոյ միաւորեալ առ Ասորդանոս (Ասքերդինոս) Սենեքերիմայ որդւով յարձակեալ Ասորեստանեայցն յաջողութեամբ յառաջխաղացմամբ Ասիայ, յորում[3] զնուար Ասորիս այս ինքն զՀրէաստան եւ զերկիրն Փղշտացւոց եւ զԵգիպտոս վանեալ միանգամին, եւ Թեբէս քաղաք գլխաւոր վերնակողմանն Եգիպտոսի ի հիմանց քանդեալ բրեցաւ[4]: Սակայն թուի ինձ թէ այն աշխարհակալութիւնք չանեւեցին ընդ երկար:

Ընդ նոյն ժամանակս ապարքն Մարք սկիզբն աշխարհակալութեանց տարածանել զիշխանութիւն իւրեանց ի վերայ արեւելեան մասին Ասորեստանեայցն եւ (ըստ մարգարէութեանցն Նաւումայ) անդէն յառաջնում կէս 7երորդ դարուն ապաստանայքն ի վերայ քաղաքին Նինուէացւոց: Թէպէտ եւ յաջողեցան Ասորեստանեայք ի պատերազմին զօր եւս ընդ նոսա արքայ Մարաց Փրաւորտէս առաջին պաշարեալ քաղաքին Նինուէացւոց (մօտ ուրեմն յամի 636)[5], բայց նորին որդի Կիաքսարէս Ա.[6] (635—595) առաւել յառաջ պատերազմն, պաշարեաց զՆինուէ, եւ թէպէտ եւ բռնեալ զարշաւանն ազգացն Սկիւթացւոց որ եկին արկեցին յԱսիացւոց աշխարհին ամս 28, խափանեցաւ առնուլ զքաղաքն, սակայն յետ զհետն զայն յաշխարհէն մերժելոյ՝ միւսանգամ սկսաւ զպաշարումն եւ առ զնա ի յորդել Դիգլաթ գետոյ, օգնականութեամբ Նաբուպաղասարայ[7] հօրն Նաբուքոդոնոսորայ, որ նոյնպէս յետս կացեալ էր յանձնեալ ի Բաբելացւոց աշխարհին. Վերջին թագաւոր Ասորեստանեայցն Սարակոս զարքունիսն հրձիգ արարեալ՝ այրէր կանամբքն եւ գանձուքն[8], եւ այնպէս լինէր Ասորեստան նահանգ Մարաց

1 Բերոսոս եւ Աբիւդենոս առ Եւսեբ. Քրոն. Յուն. Ա. էջ 43, 53:
2 Անդ:
3 Ըստ Աբիւդենայ առ Եւսեբ. Քրոն. Ա. էջ 53:
4 Նաւում Գ. 8 . . . :
5 Հերոդ. Ա. 132:
6 Ըստ Աբիւդ. առ Եւս. Ա. էջ 54 Աժդահակ կոչի:
7 Ի հայերէն օրինակին Աբիւդենայ Եւս. Քրոն. Ա. էջ 54 է Բուսաղպասարոս:
8 Աբիւդ. առ Եւսեբ. Քրոն. Ա. էջ 54:

աշխարհին։ Եւ այս լինէր ըստ համեմատութեան պատմութեանց գրոց սրբոց եւ արտաքին մատենագրաց, յամին 610—606 ոչ վաղ եւ ոչ անագան[1]։

Այսպէս ճշգիւ ի գլուխ ելանէին մարգարէութիւնք զաւառացն Ասորւոց զոր խօսեցաւ ի ձեռն մարգարէիցն Նաւումայ եւ Սոփոնիայ զամբարտաւանն եւ զպարծեցիկ քաղաքէն Նինուէացւոց եւ զԱսորեստանեայց[2]։ Բլուրք որ կան կարգաւ դէմ յանդիման Մուսուլ քաղաքի ընդ երկայնութիւն գետոյն՝ եւ գեղ մի Նունիա անուն՝ համբաւ թէ նշանակէ իւր անուն թէ անդ լեալ է երբեմն քաղաքն Նինուէացւոց։

## 49

1. Այսպէս Բաբելոնն առ մի անգամ զգլխաւորութիւն պետութեան իւրեւ 100ամեայ ժամանակ (620—538)։ Քաղդէ յետ բազում անգամ ապստամբելոյ Բաբելոնացւոցն առ այլ եւ այլ կուսակալօք եւ նուաճելոյ միանգամ ընդ իշխանութեամբ Ասորեստանեայց, (որպէս յամի իբրեւ 747 առ Նաբոնասարաւ յորմէ սկիզբն առնէ Նաբոնասարեան թուականութիւնն, եւ առ Մերոդաքայ Բաղադանաւ, որ բարեկամութեամբ էր ընդ Եզեկիայ արքային Յուդայ[3], զոր եւ սպանանէր Սենեքերիմ անուն եւ յինքն վարէր զթագաւորութիւնն, 720—710) յետոյ սպառ առ Նաբուպալասարաւ քաղդէացւոյ եղեւ յաղթութիւն։ Քաղդէացիքն ազգ քաջ[4], որոց բնակութիւն, որպէս յայտ համառօտութեան է, ի հայոց աշխարհին ի Կորդուաց լերինն էր[5], եւ ըստ սովորութեան իւրեանց[6] վարձկանութեամբ ծառայէին ի զօրսն անդ Ասորեստանեայցն, զաղթեցին ի Բաբելոն, եւ միաբանեցան ընդ հին բնակչացն։ Նաբուպալասար ի նոցին ազգէ եկեալ գլխաւոր նոցա, յետոյ եկաց ի Ասորեստանի, առաջացեալ եկաց ի Բաբելոնի, եթէ արդարեւ չէր նա վաղ իսկ կուսակալ անդ, եւ այնպէս արկ հիմն Բաբելոնական-Քաղդէական թագաւորութեան (յամի իբրեւ 620)։ Յետ հարկանելոյ Նաբուպալասարայ միաբանութեամբ ընդ Մարաց զԱսորեստան (610—606), նորին որդի եւ բաժանակից թագաւորութեան Մեծազօրն Նաբուքոդոնոսոր առ Քարքամիսաւ կատարէր յաղթութիւն մեծ ի վերայ Եգիպտացւոցն (606)։

1 Համեմատեա զԴ․ Թագ․ ԻԳ․ ընդ Երեմ․ ԻԵ․ 17․․․։ Տոբ․ ԺԴ․ 16, 17։ Հերոդ․ Ա․ 103, 106։
2 Տես Տոբ․ ԺԴ․ 6։
3 Դ․ Թագ․ Ի․ 12։
4 Ամբակ․ Ա․ 6․․․։
5 Քսենոփ․ Խրատ Կիւրոսի․ Գիրք․ Գ․ Գլ․ 2։ Տես Եզեկ․ Ա․ 3։ — Թէպէտ եւ ոմանք զբնակութիւն նոցա անդէն ի հարաւային կողման Բաբելոնացւոց աշխարհին դնեն։ Ի պատմութեան Աբրահամու յիշի անուն Ուր Քաղդէացւոց, (ըստ բնագրի․) որպէս է յայտ վասն․ Ծնն․ ԺԱ․ 28։ Առ Եսայեաւ Ա․ 17․ ի մէջ զան իբրեւ աւազակք յիշեցեալ Ուռ (ըստ բնագրին)։ Արդարեւ միշտ իսկ կայ մնաց մնացուածք ինչ ի վերայ ծագման եւ պատմութեան ազգին կամ ցեղին Քաղդէացւոց։
6 Քսենոփ․ անդ։

Խաղայր այնուհետեւ Նաբուքոդոնոսոր յամին 606, 602 (յետ յաջողելոյ զՀայսն յամի 604) եւ յամին 599 ի վերայ աշխարհին Պաղեստինացւոց, ի վերայ թագաւորութեանն Յուդայ, եւ առաւելայր վերստին իւր իշխանութիւն ի վերայ թագաւորութեանն այնորիկ, մինչեւ յետոյ ուրեմն (588) ամենեւին խլել նա զայն եւ խառնեաց ընդ թագաւորութեան իւրում, խաղացեալ տա-րեալ գերի յաշխարհն Բաբելացւոց (70 ամ)։

Չէր թոյլ յերկարագոյն ուրուք լինել ազգացն դրացեաց թագաւորութեանն Յուդայ ընդ կործանումն նորա. քանզի վաղ եւս յամի 590 առեալ նորա մարտիւ պատերազմաւ զքաղաքն Սի-դոնացւոց[1] յետ չորից ամաց (586) սկսաւ յարձակել պա-շարել զքաղաքն Տիւրացւոց, բայց յետ 13 ամաց ճգնութեան ապա առնոյր զքաղաքն (586—573)։

Ի ժամանակի սորա պաշարմանն, որպէս հաւանութեան թուի, արշաւէր Նաբուքոդոնոսոր ասպատակ յերկիրն Եգիպտացւոց, զո-րոց մնացորդութիւնքն լեալ էին թէ եւ նորա լուծանելոց են պատրաստ[2]։

Յետ առմն Տիւրոսի խաղացեալ հասանէր Նաբուքոդոնոսոր յաշխարհն Եգիպտացւոց, ապականէր զերկիրն եւ զմեհեանսն եւ զապարանսն զեղեցիկս, եւ խաղացեալ տարաւ ի նոցանէ ի գերու-թիւն (40 ամաց)[3]։ — Վասն արշաւանացն Նաբուքոդոնոսորայ ի վե-րայ Ամոնացւոց, Հրէից, Փիւնիկեցւոց եւ Եգիպտացւոց, մանա-ւանդ վասն գերի ի Հրէիցն եւ յԵգիպտացւոց տանելոյ, համեմատ գրոց սրբոց եւ արտաքինքն պատմեն[4]։

Յետ յաղթելոյ Նաբուքոդոնոսորայ երթեւ հեղեղ յԵգիպտա-ցսա ի Լիբիա՝ հասեալ ասեն զնանէ մինչեւ ցԱրձանսն Հերակ-ղէ, ապա նուաճեալ ի Սպանիա եւ զզօրսն անցուցեալ ընդ Եւ-րոպն հաստատէր յաշխարհն Իբերեաց[5]։ — Բայց զի ազգս բա-զումս անծանօթս հնազանդեցեալ Նաբուքոդոնոսոր՝ այնմ բանք մարգարէութեանց վկայեն[6], այլ եղուկ զի յետ աստուածատուր պատժոցն զոր եւ արտաքինք ի պատմագրաց հաստատեն[7], սակս ուսուցանել տալ փառս այնմ որ ետ նմա զթագաւորութիւնս ազգաց[8]։

2. Ընդէն առ յաջորդաւ նորա Եւիլմարոդաքաւ՝ (561—559) որ ահագին եւ բարեկեցիկ էր, սկիզբն առնոյր հանապազորդ պա-

1 Եզեկ. ԻԸ. 21—24։ Երեմ. ԻԷ. 3։
2 Եզեկ. ԻԵ։
3 Եզեկ. ԻԹ — ԼԲ։ Երեմ. ԽԳ. 8 — 13. ԽԴ, ԽԶ։
4 Բերոսոս առ Եւս. Քրոն. Ա. էջ 64։
5 Մեգասթենէս (յամի իբրեւ 330) առ Եւս. Քրոն. Ա. էջ 70 — 71. եւ Աբիւ-դենոս առ Խորենացւոյն Բ. Գլ. Ը. էջ 169—170. «Նաբուգոդոնոսոր քաջագոյն էր քան զՀերակղէս Լիբիացւոց. զօրաժողով լեալ հասանէր ի Վերիացւոց աշխարհն (ի Սպա-նիա) եւ վանեալ խորտակեալ ընդ ձե-ռամբ նուաճէր. եւ զմասն մի ի նոցանէ յաջակողմն Պոնտոս ծովու յաբնակութիւն տա-րեալ բնակեցուցանէր»։ (այս ինքն զՎիրս)։
6 Երեմ. ԻԵ, ԻԷ. ԻԷ — ԻԹ։
7 Աբիւդենոս առ Եւս. Քրոն. Ա. էջ 59 — 60։
8 Դան. Դ։

տերազմն ընդ Մարաց եւ Պարսից, եւ Ներիգղասար (559—555) նորին քեռայր որ սպանն իսկ զնա՝ անկանէր ի ճակատուն, եւ Լաբոսարքադ (կամ Լաբեասարք) նորին որդի ապաժամանն եւ անարգորդոյն Ցամնեայ սպանեալ (555), Նաբոնիդոս կամ Լաբինիդոս որդի Նաբոնիմարոդաքայ եւ կնոջ նորա Նիտոկրիսայ վերջին թագաւոր Բաբելացւոց առնոյր այնուհետեւ զթագաւորութիւնն (555 — 538)[1]. զսա գիրք՝ Բաղդասար կամ Բեղշասար անուանեն.

Սա վարէր յառաջ զպատերազմն ընդ Մարաց եւ Պարսից. բայց Կիւրոս յաղթեալ նմա հան զառաս բազումս ի նմանէ: Յայնժամ վարձեաց նա զօր բազում անհնարին, ի ձեռն եւս դաշնաւորին իւրում Կրեսոսայ: Ընդ Կրեսոսի ընդ Ալես ընդ սահմանս թագաւորութեան իւրոյ, դիմեաց հաս պատրաստական ի Գամիրս: Բայց Կիւրոս եհար զնա զօրօքն որ սակաւաւոր էր քան զնորայն եւ ստիպեաց դառնալ այսրէն ի Լիւդաստան. անդ միւսանգամ ի մարտ պատերազմի ընդ մեծամեծ բանակին, բայց Կիւրոսի յաղթեալ Կրեսոսի եւ զգլուխ քաղաքաց նորա զՍարդիս եւ զնա կալաւ ձերբակալ (իբրեւ 550): Յետ այսր յաջողութեան պատերազմի նուաճեցաւ ընդ ձեռամբ Մարաց եւ Պարսից համօրէն Փոքրն Ասիա, յՀելլեսպոնտէ ծովէ մինչեւ ցԵփրատ գետ: Յետոյ հնազանդեաց Կիւրոս եւ զԱսորիս եւ զԱրաբիա:

Ապա ուրեմն եհաս կարգաւ մրրիկն ի վերայ թագաւորութեանն Քաղդէացւոց: Քանզի Կիւրոս յետ պարտելոյ զԲաղդասար առ Բաբելոն քաղաքաւ եւ Բաղդասարայ ամփոփելոյ ի ներքս ի քաղաքին, ակսաւ պաշարել զԲաբելոն (յամի իբրեւ 540): Անհնարին էին թուէր առնուլ զայնպիսի քաղաք որոյ այնպէս թանձր պարիսպք էին եւ բարձրաբերձ աշտարակք եւ խորամ շուրջանակի խոր յոյժ, որոյ պաշար եւս զայր 20 ամաց եւ պաշտպանէր նմա ամենայն զօրն Քաղդէացւոց: Եւ արդեամբք իսկ դեգերեաց եկաց Կիւրոս առն երկուս առաջի քաղաքին, բայց ոչ դատարկութեամբ. զի մինչ դեռ պաշարեալքն ի ներքուստ արտաքս ծաղր առնէին զնա եւ զզօրս նորա, սոքա ձեռն ի գործ արկեալ վաստակէին ի կորուստ նոցա:

Հրաման ետ Կիւրոս փորել ջրանցս լայն եւ խոր, զի զԵփրատանի որ ընդ մէջ Բաբելոնի անցանէ՝ տարցի ի ծովակ ինչ որ անդ ուրեմն մօտ կայր, զի այնպէս ցամաքեցուցեալ զխոր գետոյն՝ ընդ այն մտանիցէ ի Բաբելոն: Եւ սահմանեաց օր մի յորում ամ ըստ ամէ ի գիշերի առնէին տօն Բաբելացիքն շուայտութեամբ եւ արբեցութեամբ ըստ միաբանն պատմութեան գրոց սրբոց[2] եւ արտաքին մատենագրաց[3]:

1 Տես վասն սոցա ամենեցուն զԲերոսոս առ Եւս. Քրոն. Ա. եր 71 — 73. եւ զՅովսեփ. Խորում Ապիոն:

2 Դան. Ե:

3 Քսենոփ. Խորում. Ապիոն:

Ի նմին գիշերի եւ բանալ Կիւրոս զջրադարձան․ յերկոցունց կողմանց դիմեցին ի ներքս Պարսիկք եւ Մարք ի Բաբելոն եւ դէպ ուղիղ ի վերայ տանն արքունի: Գիշերապահքն արքունեաց կոտորեցան առաջի դրանն, խռչիւնն եւ աղմուկն ստիպեցին բանալ զդրունսն․ յայնժամ յարձակեալ ի վերայ թագաւորին սպանին զնա եւ զայնոսիկ որ ընդ նմա էին: Այսպէս առաւ Բաբելոն ըստ միաբան պատմութեան գրոց սրբոց եւ արտաքին մատենագրաց (538):

Ոչ միայն առն Բաբելոնի երբեւ դատաստան ինչ Աստուծոյ հարիւրաւոր ամօք կանխագոյն պատմեցաւ[1], այլ եւ մի մի եւս դէպք առմանն կան նշանակեալ ի մարգարէութիւնսն[2]: Քանզի յետ խրատելոյ յԱստուծոյ ամենայն ազգաց՝ Բաբելոն եւս պատուհասեալ ընդունելոց էր հատուցումն[3]: Իսկ ամենեւին քայքայումն քաղաքին առ սակաւ սակաւ եղ ի գլուխ․ կոյտ կոյտ աւերակաց նորա առ Եփրատ գետով մնան ի փոքր քաղաքիկն Հիլլա՝ համարին լինել նշմարանք ամբարտաւան քաղաքին Բաբելացւոց[4]:

## Ը

### Առաջակողմն Ասիոյ․ (2200—550):

### 50

Աղբիւրք: Հերոդոտոս Ա, Բ: Հոմերոս՝ Իլիական, ամենայն ըստ տառադեղբք: Ստրաբոն Ծ, ԺԲ — ԺԴ: Պաւսանիաս Մեղա Ա:

ԱՌԱՋԱԿՈՂՄՆ Ասիոյ կամ Փոքր Ասիա երկիր ինչ իբրեւ 12,000 մղոն՝ կայ յարեւելից առ Եփրատ գետով (առ Ալիւս գետով), իսկ յայլ եւս կողմանց պատէ զնա ծով (Եգէականն եւ Միջերկրականն), եւ հատեալ անցանեն ընդ նա լերինքն Տաւրոսի: Ի կողման արեւմտից կան նահանգքն Միւսիա, Լիւդիա, Կարիա. ի կողմանս հարաւոյ՝ Լիւկիա, Պամփիլիա եւ Կիլիկիա հանդերձ Իսաւրիաւ. ի հիւսիսակողման՝ Բիւթանիա, Պափղագոնիա, Պոնտոս. իսկ ի միջավայրի՝ Փռիւգիա (հանդերձ Պիսիդիաւ եւ Լիկաւոնիաւ), Գաղատիա, Կապադովկիա (հայերէն Գամիրք): Իսկ ի ցեղից անտի Կարիացիքն էին ի կողմն արեւմտից, Փռիւգացիքն ի ներքս անդ մինչեւ ցԱլիւս գետ, Ասորի Կապադովկացի ազգն յայնկոյս Ալիւս գետոյ, իսկ Թրակացիք ի Բիւթանիա. այս ազգք էին բազմաւորք քան զամենեսին: Երեք թագաւորութիւնք ի սոցանէ արժանի են յիշատակի պատմութեան, որք առհասարակ յարդիւնարարութիւնս, ի բովս, ի խաշնարածութիւն, եւ ծովեզերեայքն ի նաւարկութիւն եւս եւ ի վաճառականութիւն պարապէին:

1 Եսայ. ԺԳ, ԺԴ, ԽԱ, ԽԷ:
2 Եսայ. ԽԱ. 5, 9: Երեմ. Ծ. 24, 5, 38. ԾԱ. 30 — 32, 39, 41:
3 Երեմ. ԻԵ. 8 — 11, 12, 15 — 26:
4 Տե՛ս Երեմ. Ծ, ԾԱ:

1. Տրովականն թագաւորութիւնն բովանդակէր զարեւմտակողմն Միւսիայ որ եւ կոչէր եւս փոքր Փռիւգիա։ Սորա պատմութիւն բովանդակեալ կայ ի բանս եւեթ պիտեից եւ չէք հնար ճշմարտիւ զժամանակացն որոշմունս առնել ի մէջ։ Թագաւորք պատմին լեալ՝ Սկամանդրոս յառաջին. հարստութենէ, Տեւկրոս, Դարդանոս յերկրորդ հարստութենէ, Տրոս շինիչ Տրովադայ, Իղոս յորմէ Իղիոն քաղաք կոչեցաւ՝ առ զԼիւթանիա, Ղաւմեդոն, առ որով ընդ Յունաց պատերազմն լեալ, Պրիամոս առ որով Տրովա յետ 10ամեայ պատերազմի (յամի իբրեւ 1190) ի Յունաց քանդեցաւ։ Իսկ կալան զերկիրն նոցա Փռիւգացիք եւ Լիւդացիք։

2. Փռիւգացւոց թագաւորութեան պատմութիւն է նոյնպէս լի առասպելօք։ Գրեթէ ամենայն իւր թագաւորաց նոցա Գորդիոս կամ Միդաս անուն կոչէր, զկարգ պայազատութեան նոցա չմարթի ճշգիւ սահմանել։ Զառաջնոյ Գորդիոսէ որ զԳորդիոն քաղաք գլխաւոր շինեաց՝ պատմեն կապել զհոյակապ հանգոյցն ի վերայ կառաց իւրոց ի մեհենին. զայն հանգոյց Աղեքսանդրոս Մեծն յետ բազում ամաց կտրեաց սուսերաւն։ Յետ վախճանելոյ վերջնոյն Միդայ՝ անց թագաւորութիւնն առ Լիւդացիս (յամի 560)։ — Ի Փռիւգացւոց պատմի լեալ Եզովպոս։

3. Թագաւորութիւնն Լիւդացւոց։ Լիւդացիք (կամ Մէոնացիք) զարմ ինչ էին ի ցեղէ Կարիացւոցն։ Երեք հարստութիւնք եղեն թագաւորութեան նոցա. առաջին՝ Ատիադացն մինչեւ ցամն 1200. երկրորդն՝ Հերակղեանց ցամն իբրեւ 730. երրորդն՝ Մերմնադեանց յորոց բուն պատմութիւնն սկսանի, այս ինքն ի Գիւգէս հովուէ որ զԿանդաւղէս թագաւոր սպան, առ զԿողոփոն եւ զՏրովադա † 690։ Արդիս առ զՊրիէնէ, բայց առ նովաւ դիմեցին Կիմմերիացիք ի Լիւդաստան (670) եւ առին զՍարդս որ էր նոցա քաղաք գլխաւոր † 640։ Սադիատտէս † 630։ Աղիատտէս մերժեաց հան զԿիմմերիացիս եւ ապա առ զԶմիւռնիա. եռ պատերազմ եւ ընդ Կիաքսարայ Ա. Մարաց թագաւորի, † 570։ Կրիւսոս նորին որդի առ զԵփեսոս, հնազանդեաց զամենայն Առաջակողմն Ասիայ մինչեւ ցԱղիւս գետ, եւ այնպէս յօրինեաց զմեծ թագաւորութիւնն Լիւդացւոց յոր խառն էր եւ Թրակիա։ Բայց աշխարհակալն Կիւրոս արար վախճան թագաւորութեանն նորա, եւ զԱռաջակողմն Ասիայ արար նահանգ Պարսից թագաւորութեան (ի միջի 560—550 ամաց)։

Այս Առաջակողմն Ասիայ էր մանաւանդ ասպարէզ արշաւանաց թափառական ազգաց Հիւսիսակողմանց Ասիայ։ Քանզի ի մեծատարած վայրսն որ յԵւքսինոս եւ ի Կասպից ծովուց տարածեալ ձգին ի հիւսիսակողմն արտաքոյ քան զասպարէզ պատմութեան (որ հայրենիք իմն էին Հոնաց, Մանգողաց, Թաթարաց, Կաղմուկաց, Թուրքաց) բնակեալ էին ազգք խառնաղանճք՝

եւ Անտիոքացւոց կամ, անուանեալ կոչէին Խոր Ասորիք, որ յետոյ եւ զերդմանս ծովեզերեայն բովանդակէր: Լերինքն Լիբանանու եւ Անտիլիբանանու զարձեն պատուարքր զարեւմտեան կողմն Ասորւոց գետովք, խաղիւք եւ աղբերօք որ ի լերանց անտի իջանեն. բայց որչափ երթայ ոք միջամուխ ի դաշտաձեւ տեղիսն, դոյնչափ անպտղաբեր զերկիրն գտանէ, եւ յետ աւազուտացն զայս աւազուտ ինչ մեծ՝ յորում կան առոս անդ դալար ինչ վայրք, յորս հոյակապ իմն էր քաղաքն Պաղմիւրայ: Նշանաւորք ի գետոց են Որոնտէս (այժմ Էլ-Ասի) եւ Եղեւթերոս (Ազատ գետ) որ ի լեռնոտանէ անտի վերնակողմանն Լիբանանու ելանեն, եւ Քրիսորոաս գետ (այժմ Բարադա) որ յԱնտիլիբանանէ իջանէ:

Բնակեցին յերկրին Ասորւոց որդիքն Արամայ որդւոյ Սեմայ, (զորս Հոմերոս եւ Հեսիոդոս քաջ ի բաց հինք ի Յունաց մատենագրաց՝ կոչէին Արիմացիս) եւ ի նոցանէ կոչեցաւ անուն աշխարհին[1]: Բաժանեալ էին Ասորիք կամ Ասորեստանք ի բազում իշխանութիւնս եւ ի սահմանս: 1. Ի Միջագետս կամ յԱրամն Նահարայիմ զտանեմք թագաւոր կացեալ զԽուսան Ռասաթայիմ կամ Գուսարսաթէմ, որ ութամեայ ժամանակ Իսրայելացւոց տիրեաց յամի իբրեւ 1430[2]: 2. Արամ Մաաքա կամ Մաքա (Մաքաթ)[3]: 3. Արամ Սուբայ կամ Արամ անուն Սուբայ (Բեթ-Ռեքոբ) ի վերայ հիւսիսային սահմանացն Պաղեստինեայ[4]: 4. Եմաթ (Համաթ) նահանգ (առ Որոնտէս գետով եւ առ Լիբանան լերամբք) հանդերձ անուանակից քաղաքաւ Համաթաւ (յետոյ Եպիփանիա)[5] որոյ թագաւոր բարեկամութեամբ էր ընդ Դաւթի[6]. ապա առաւ յԱսորեստանեացն[7]: 5. Սորա սահմանակից՝ թագաւորութիւնն Արփաթայ[8]: 6. Հաւրան յարեւելից ծովուն Գալիլեացւոց (նոյն ընդ այնմ որ յետոյ Աւրանիտիս կոչեցաւ)[9]: 7. Գեսուր առ Հերմոնիւ[10] որոյ թագաւոր Թողմէ եւ զդուստր իւր Դաւթի կնութեան ետ, ուստի Աբիսողոմ ծնաւ, որ յետ զԱմնոն զեղբայր իւր սպանանելոյ եկաց փախստեայ ի Գեսուր ամս երիս[11]:

Այս ամենայն թագաւորութեանց՝ երեւելիքն ի նոցանէ լինէին առաջնորդ յերեւելի գործս եւ իբրեւ այն թէ զպատուականութիւնն ունէին. այսպիսի երեւելի թագաւորութիւն թուի լեալ ի սկզբանն՝ թագաւորութիւնն Սուբայ եւ ապա թագաւորութիւնն Դամասկեայ, որոց բուն վախճան ի մեծի էր՝ տիրել Եբրայեցւոց մինչեւ անդ յետ բաժանման թագաւորութեան նոցա յերկուս:

1 Ծնն. Ժ. 22:
2 Դատ. Գ. 8:
3 Յես. ԺԳ. 11: Բ. Թագ. Ժ. 6, 8: Ա. Մնաց. ԺԹ. 6. ԻԹ. 6. ըստ յունայ.:
4 Բ. Թագ. Ժ. 6: Դատ. ԺԸ. 28:
5 Յես. ԺԳ. 5: Դատ. Գ. 3: Գ. Թագ. Ը. 65: Դ. Թագ. ԺԴ. 25: Ամովս Զ. 15: Երեմ. ԽԹ. 23: Եզեկ. ԽԷ. 11:
6 Բ. Թագ. Ը. 9:
7 Դ. Թագ. ԺԸ. 34. ԺԹ. 13: Եսայ. ԼԷ. 12, 13:
8 Դ. Թագ. ԺԸ. 34. ԺԹ. 13: Եսայ. ԼԷ. 13:
9 Եզեկ. ԽԷ. 16, 18:
10 Երկր. Գ. 14. ըստ յունայ.: Յես. ԺԲ. 5. ԺԳ. 13:
11 Բ. Թագ. Գ. 3. ԺԳ. 37:

52

Ա. Թագաւորութիւնն Սուբայ (առաւել յայսկոյս Եփրատայ)
որոյ թագաւորաց, որպէս թուի, միշտ Ադրաազար անուն էր[1], ոչ
դոյզն ինչ էր զօրութեամբ. քանզի Դաւիթ յառաջնում պա-
տերազմի անդ զօր տայր ընդ նմա՝ առ գերի ի նոցանէ 1700 հե-
ծեալ եւ 20,000 հետեւակ[2]. բայց սակայն Ադրաազար յետ ոչ բա-
զում ժամանակի ի վերայ անցանելոյ, միւսանգամ բազում զօրք՝
զօրաւիգն օգնականութեան Ասորւոցն հակառակ Դաւթի՝
լինէր։ Յետոյ ուրեմն ի պարտութիւն մատնեալ նուաճեցան
յամի իբրեւ 1040[3]։

Բ. Առաւել նշանաւոր էր թագաւորութիւնն Արամ Դամաս-
կեայ ի հիւսիսոյ արեւմտից Արամ Սաբայ՝ հանդերձ գլխաւոր քա-
ղաքաւն Դամասկեաւ, որ կայր վաղ իսկ եւ ի ժամանակին Աբրա-
համու[4]։ Այս թագաւորութիւն էր ընդ իշխանութեամբ Արամ
Սուբայ նախ քան զժամանակն Դաւթի[5]։ Այլ յետ հնազանդելոյ
զնա Դաւթի ընդ ձեռամբ՝[6] յիշին սակայ այնուհետեւ թագաւորք
նոցա յԻսրայելացւոցն պատմութեան, եւ (ըստ Նիկողայոսի Դա-
մասկացւոյ[7]) ընդ ամենայն տասն եւեթ թագաւորք կացին մինչեւ
ցկատարած թագաւորութեանն, որք առհասարակ անուանեալ
կոչէին Ադադ (յանուն արեգակնային աստուածոյն Ասորւոց). սա-
կայն ի գիրս սուրբս այլ իմն անուանք կոչին նոցա։ — Առաջին
թագաւոր ի թագաւորաց զոր գիրք յիշեն՝ էր Ռասոն որ զառա-
ջինն զթագաւորութիւնն Դամասկեայ արար ինքնօրէն թագաւո-
րութիւն՝ թօթափեալ զլուծ տէրութեան թագաւորացն Սուբայ,
որ ի վաղուց տիրէին, եւ (յամի իբրեւ 980) զլուծն Սողոմոնի՝ որ
յետ աշխարհակալութեանցն Դաւթի տիրէր ի վերայ ամենայն
թագաւորութեանցն Ասորւոց[8]։ Յայնմ ժամանակէ հետէ Դա-
մասկոս (որպէս յառաջն երբեմն Սուբա) երեւի ի գլուխ մանր մանր
թագաւորութեանցն Ասորւոց[9], եւ էր հանապազ պատերազմաւ
ընդ հարաւային դրացեաց իւրոց՝ ընդ Իսրայելացւոց որք առաւել
ի պարտութիւն մատնէին։ Յետ Ռասոնի թագաւորէր Հեսիոն,
եւ զսա փոխանակէր նորին որդի Տաբրիմոն, որ էր դաշնաւոր ընդ
Ասայի արքայի Յուդայ[10]։ Ապա թագաւորէր Բէն-Ադադ Ա. (յա-
մի իբրեւ 950) առ որով սկիզբն առնոյր պատերազմն ընդ Իսրայե-
լացւոց. եւ տեւէին յեղծումն եւ յապականութիւն երկոցունց
եւս երրայական թագաւորութեանցն առ որդւովն նորա եւ պայա-
զատաւ Բէն-Ադադաւ Բ. (յամի իբրեւ 900)։ Այս Բէն-Ադադ

1 Ա. Թագ. ԺԱ. 23։ Բ. Թագ. Ը. 3, 5. Ժ. 16։
2 Բ. Թագ. Ը. 4։
3 Բ. Թագ. Ժ. 8 — 19։
4 Ծնն. ԺԴ. 15։
5 Բ. Թագ. Ը. 3...։ Ա. Թագ. ԺԱ. 23։
6 Բ. Թագ. Ը. 6։
7 Առ Յովսեփ. Հնախօս. պատմ. Է. 5, 2։
8 Գ. Թագ. ԺԱ. 23 — 25։
9 Տես Գ. Թագ. Ի. 1, 16, 24։ Ամովս Ա. 5։
10 Գ. Թագ. ԺԵ. 18, 19 ըստ բնագրի։

ապա փոփոխումն առաջնորդութեան մանր թագաւորութեանցն Ասորւոց, զի բարձեալ զթագաւորս՝ որոց թիւ համարոյ էր 36, կացոյց փոխանակ նոցա կուսակալս[1]: Սա էր մեծ և անուանի քան զամենայն թագաւորսն Դամասկացւոց (ըստ Նիկողայոսի Դամասկացւոյ):

Յետ այնորիկ անցանէր թագաւորութիւնն ի նոր ինչ հարստութիւն՝ յորմէ առաջին թագաւոր եկաց Ազայէլ (յամի իբրեւ 890)[2], որ առաւել ևս յաջողութեամբ քան զառաջինսն տանէր յառաջ զճակատսն ընդ Իսրայէլի: Այլ ապա ուրեմն առ նորին որդւով Բէն-Ադադաւ Գ. (յամէ իբրեւ 840)՝ յաջողել սկսան Իսրայէլացիքն և վատթարել Ասորիքն. քանզի յետ երից ճակատուց՝ ոչ միայն աշխարհակալութիւնքն նոցա ելին ի ձեռաց նոցա[3], այլ և Յերոբովամ Բ. (825 — 784) ընդարձակեալ տարածեաց միւսանգամ զսահմանս թագաւորութեանն Իսրայէլի ի վերայ սահմանացն Ասորւոց՝ որոց Դամասկացիքն տիրեալ էին[4]:

Յայնմ հետէ անհետ իմն լինի Դամասկոս իբրեւ զժամանակ կէսոյ դարու՝ ի պատմութենէ գրոց սրբոց, մինչեւ յետ ժամանակին այնորիկ՝ յորում (ըստ Նիկողայոսի Դամասկացւոյ) թագաւորեալ էր Ադադ Թ. զայ երեւի յասպարիզի անդ գրոցն պատմութեան՝ տասներորդն և վերջին թագաւոր Ռասոն (Ադադ Ժ. յամի իբրեւ 760): Սորա միաբանեալ ընդ Փակէայ արքայի Իսրայէլի յաղթէր ի բազում ճակատս Աքազու արքայի Յուդայ. նմին իրի ի նեղ մեծ անկեալ սորա՝ կոչեաց զԹագղաթփաղասար զարքայ Ասորեստանեայց ի թիկունս օգնականութեան. եկն Թագղաթփաղասար, սպան զՌասոն, առ զԴամասկոս, և զբնակիչսն հան տարաւ վտարանդի (յամի իբրեւ 740)[5]: Ապա ածան ի Դամասկոս գաղթականք յԱսորեստանեայց[6] (որպէս յետոյ և ի Սամարին): Յայնմ հետէ դադարեաց թագաւորութիւն ի Դամասկոսէ, և այնպէս առին կատարումն սպառնալիք մարգարէիցն[7]: Յետ կալոյ ընդ տէրութեամբն Ասորեստանեայց[8] անց առ ժառանգս իշխանութեանն նոցա՝ նախ առ Քաղդէացիսն[9] և ապա առ Պարսիկս:

1 Գ. Թագ. Ի. 24:
2 Գ. Թագ. ԺԹ. 16: Դ. Թագ. Ը. 13 — 15:
3 Դ. Թագ. ԺԳ. 19, 25:
4 Դ. Թագ. ԺԴ. 25 — 28:
5 Դ. Թագ. ԺԵ. 37. ԺԶ. 5 — 9: Եսայ. Է. 1... Ը. 1...: Բ. Մնաց. ԻԸ. 5...:
6 Յովսեպ. Նախն. պատմ. Թ. 12, 3:
7 Եսայ. ԺԷ. 3: Երեմ. ԽԹ. 23 — 27: Ամովս Ա. 3 — 5:
8 Տես Եսայ. Թ. 11:
9 Երեմ. ԽԹ. 23, 27: Տես և Դ. Թագ. ԻԴ. 2:

## 86

Սակայն ըստ խրատու մօրն իւրոյ չոգաւ Յակոբ փախստական վասն զգուշութեան անձին իւրոյ՝ յետ երկրորդ անգամ ի Հօրէն օրհնելոյ՝ ի Խառան ի Միջագետս՝ առնուլ անդ կին յազգականութենէ իւրմէ (1757), — զի մի լծեսցի ընդ դստերացն Քանանացւոց որպէս Եսաւն։

Ի միում աւուր ի փախստեան յորժամ արեւն ի մուտս էր, ննջեաց Յակոբ բացօթեայ եդեալ քար մի ընդ սնարս իւր։ Եւ ընդ քունն տեսանէր սանդուղս հաստատեալ յերկրի, որոյ գլուխն հասանէր մինչեւ յերկինս, եւ հրեշտակք Աստուծոյ ելանէին եւ իջանէին ընդ նա. իսկ Տէր կայր կառուցեալ ի սանդղոցն ասէր. «Ես եմ Տէր Աստուած Աբրահամու հօր քո եւ Աստուած Իսահակայ, մի երկնչիր, զի զերկիրդ յորում դու ննջեցեր, քեզ տաց զդա եւ զաւակի քում։ Եւ եղիցի զաւակ քո իբրեւ զաւազ երկրի . . . եւ օրհնեսցին ի քեզ ամենայն ազգք երկրի՝ եւ ի զաւակի քում։ Եւ ես ահաւասիկ ընդ քեզ եմ պահել զքեզ յամենայն ճանապարհս քո՝ յոր եւ գնասցես. եւ դարձուցից զքեզ յերկիրս յայս. զի ոչ թողից զքեզ մինչեւ արարից զամենայն ինչ զոր խօսեցայ ընդ քեզ»։

Այսպէս յայտ եղեւ թէ Յակոբ ինքնին էր յորում աւետիքն Մեսիային ի կատարումն հասանելոց էին։ Իսկ նա կանգնեաց արձան զվէմն զոր ընդ սնարսն եդեալ էր, եւ կոչեաց զտեղին Բեթէլ (տուն Աստուծոյ, որ յառաջն Լուզ կոչէր)[1]։

## 87

Յետ այնորիկ հասանէր Յակոբ յաջողութեամբ մօտ ի Խառան. անդ եւտես զգեղեցիկն Ռաքէլ՝ զդուստր Լաբանու եղբօր մօր իւրոյ եւ սիրեաց զնա. եւ զի առնուցու զնա իւր՝ եկաց նա ի ծառայութեան անձնատէրն Լաբանայ մօրեղբօր իւրոյ եւթն ամ. եւ թէպէտ եւ նենգեաց նմա Լաբան եւ ետ զդուստր իւր երէց զԼիա տալով՝ ի կնութիւն, չձանձրացաւ Յակոբ ծառայել միւսանգամ այլ եւս ամս եւթն վասն զՌաքէլ առնլոյ։ — Ոմանց կարծիք երկբայութեան է՝ թէ այս երկու հարսանիք Յակոբայ անդէն յառաջնում ամին ի սկզբան պանդխտելոյ նորա առ Լաբանու եղեն՝ փոխարէն երկուց եւթնամեայ ժամանակաց ծառայութեան։

Թէպէտ եւ ծնաւ նմա Լիա որդիս՝ զՌուբէն, զՇմաւոն, զՂեւի եւ զՅուդա, բայց Ռաքէլ էր ամուլ։ Նմին իրի թոյլ ետ առն իւրում Ռաքէլ՝ ըստ սովորութեան այնց ժամանակաց, առնուլ փոխանակ իւր զնաժիշտն իւր զԲաղլա, եւ ծնաւ զԴան

1 Ծնն. ԻԸ.

եւ զՆեփթաղիմ․ իսկ Զելփա նաժիշտն Լիայ ծնաւ զԳադ եւ զԱսեր․ յետ այնորիկ ծնաւ Լիա եւս որդիս զԻսաքար եւ զԶաբուղոն եւ դուստր մի Դինա անուն։ Յայնժամ յիշեաց Տէր եւ զՌաքէլ, լուաւ ձայնի նորա եւ ետ որդի մի նմա զոր Յովսէփ կոչեաց (1740)։

Կամէր Յակոբ այնուհետեւ դառնալ յերկիրն անձնային տանն իւրոյ, բայց հաւանեցաւ աղաչանաց Լաբանու՝ մնալ անդէն ժամանակս ինչ եւ ծառայել նմա ընդ մասին իւրիք խաշանցն Լաբանու։ Թէպէտ եւ բազմապատիկ ջանայր ընչասէրն Լաբան առաւելագոյն իմն շահել, բայց օրհնեաց Աստուած զՅակոբ՝ սքանչելապէս․ եւ յայն սակս խիստ խոժոռեալ ակնաւ ընդ նա Լաբան, մինչեւ խորհեցաւ ի մտի Յակոբ յետ վեցամեայ ժամանակի ծառայութեանն երթալ ի բաց, որպէս եւ Աստուծոյ իսկ ասացեալ էր հրաման[1]։

88

Չու առնէր Յակոբ ամենայն տամբն, խաշամբք եւ ամենայն ստացուածովք իւրովք ի ժամանակի զի Լաբան զխաշամբքն զբաղեալ էր, եւ անց ընդ Եփրատ (1737)։ Իբրեւ ազդ եղեւ Լաբանու զփախստեանէ նորա, պնդեցաւ զհետ նորա եւ եհաս նմա ի լերինն Գաղաադու․ բայց խրատեալ յԱստուծոյ ի տեսլեան՝ չարար ինչ վնաս Յակոբայ։ Հաշտեցան ընդ միմեանս եւ եդին դաշինս բարեկամութեան ընդ իրեարս, ապա մեկնեցան։

Ի չուելն իւրեանց գողացաւ Ռաքէլ զկուռս տան հօր իւրոյ զոր թերափիմս կոչէին, որ էին պատկերք մարդակերպք ի քրէական նիւթոց ըստ սաբէական պաշտամանց ձուլեալք ի ժամանակի պատահելոց տահմանելոց ինչ աստեղատանց, եւ ընթանային առ նոսա խնդրել խորհուրդ ի նոցանէ, յորժամ վարանէին ի մերայ հանանէին։ Հաւանութեամբ իմն է թէ վասն բարւոյ իրիք էր գործն Ռաքելայ․ բայց՝ որպէս յայտ է, չէր ամենեւին գիտակ Յակոբ իրացն եղելոց[2]։

Ուրախ եղեւ Յակոբ՝ զի հաշտութեամբ մեկնեցաւ ի Լաբանայ աներոյ իւրմէ, բայց խռովեցուցանէր զնա երկեւղ եղբօր իւրոյ Եսաւայ, մանաւանդ յորժամ պատմէր նմա թէ խաղացեալ գայ ի վերայ նորա Եսաւ 400 արամբք։ Յայնժամ աղաչանս լինէր Յակոբ յԱստուած հարցն իւրոց՝ ջերմեռանդն աղօթիւք, եւ առաքէր պատարագս ի հօտից իւրոց ընդ առաջ նորա․ եւ ի վաղիւ անդր իբրեւ ետես զնա ի հեռաստանէ, խոնարհեցաւ անկաւ առաջի նորա ամենայն տամբն։ Խանդաղատեցաւ ի գութ դարձաւ Եսաւ, գիրկս արկ Յակոբայ եւ համբուրեաց զնա, եւ մեկնեցան ի միմեանց հաշտութեամբ[3]։

1 Ծնն. ԻԹ — ԼԱ. — 16։ 2 Ծնն. ԼԱ. 17...։ 3 Ծնն. ԼԲ, ԼԳ։

Իսկ ի գիշերին՝ մինչ չեւ հասեալ Եսաւայ՝ մարտնչէր Յակոբ ընդ հրեշտակի, որ թոյլ ետ պարտել անձին իւրում ի նմանէ, ուստի եւ անուն կոչեաց նմա Իսրայէլ (դիմակալ Աստուծոյ)։ Վասն այնորիկ իսկ եւ զաւակն Յակոբայ Իսրայելացիք կոչեցան. եւ ինքն Յակոբ՝ անուն կոչեաց տեղւոյն Փանուէլ՝ այս ինքն տեսիլ Աստուծոյ[1]։ Նա յետոյ կրկին եկն հրամանաւ Աստուծոյ ի Բեթէլ՝ երեւեցաւ նմա Աստուած, կոչեաց զնա միւսանգամ Իսրայէլ, եւ կրկնեաց զաւետիսն զաւակին[2]։

Յետ սակաւ ինչ միոյ վախճանեցաւ Ռաքէլ (1730) ի ծնանելն որդի մի Բենոնի (որդի ցաւոց) անուն։ Բայց Յակոբ կոչեաց Բենիամին (որդի աջոյ, այս ինքն ցուպ ծերութեան իւրոյ). եւ թաղեաց Յակոբ զՌաքէլ ի վերայ ճանապարհին ի Բեթէլ։

Ապա եկեալ ի Մամբրէ առ հայր իւր Իսահակ, որ եւ մեռաւ 180 ամաց (1710), եւ թաղեցին զնա Եսաւ եւ Յակոբ[3]։

Յետ վախճանին Իսահակայ անջատեալ մեկնեցաւ Եսաւ առանձին իւրով եւ ամենայն կարեաւն՝ յեղբօրէն իւրմէ Յակոբայ. բնակեաց նա ի լերինս Սէիրայ, եւ եղեւ նահապետ Եդովմայեցւոց[4]։

## 89

Իբրեւ տասն ամօք նախ քան զվախճանն Իսահակայ, մինչ դեռ մորմոքէր տակաւին սիրտ Յակոբու ընդ մահն Ռաքելայ, մեւս եւս դժուարին վարանք եւ տագնապ ի վերայ հասանէին՝ որ ընդ երեկս աւուրց նորա խռովեցին զնա առաւել քան։ Յովսէփ որդի նորա սիրելութիւն էր կենաց նորա ի ժամանակի՝ զի որդիքն երիցագոյնք դաւանեցուցանէին զնա բազում անգամ[5]։ Բայց խրատացիկ սէր հօրն կուտեաց ի գլուխ նորա զանխրատ ատելութիւն եղբարց նորա, եւ չխօսէին ողջոյն ընդ նմա սիրով խաղաղութեամբ։

Իսկ իբրեւ եւս Յովսէփ երկուս երազս որ ցուցանէին իւր զգերագրանեալ նորա ի վերայ քան զհամօրէն ընտանիսն իւր՝ եւս եւս աւելի զայրացաւ նախանձ եւ ատելութիւն եղբարցն, եւ սպանանել զնա մտաբերէին՝ յորժամ եկեալ էր նա առ նոսա ի դաշտ։ Ռուբէն արգել զնոսա յառաջնումն, եւ արկին ի գուբ մի. այլ յետոյ վաճառեցին զնա վաճառականացն Արաբացւոց 20 արծաթոյ (1720), եւ նոքա վաճառեցին զնա երկրորդ անգամ յԵգիպտոս[6]։

Թէպէտ եւ յաջողեցաւ Յովսէփայ ի տան Պետափրեայ՝ միոյ ուրուք ի մեծամեծացն Փարաւոնի. քանզի իմացաւ այրն թէ Աստուած է ընդ պատանեկին, եւ կացոյց զնա հազարապետ տան իւրոյ. բայց վասն հաստատութեան մտացն՝ որով մերժեաց նա

1 Ծնն. ԼԲ. 24...։
2 Ծնն. ԼԵ.—15։
3 Ծնն. ԼԵ. 16...։
4 Ծնն. ԼԶ։
5 Տես Ծնն. ԼԷ։
6 Ծնն. ԼԷ։

դրէին ի նոցանէ, զի թափեսցեն զանձինս ի նոցանէ. եւ դարձեալ զի կարող էին Եգիպտացիքն առնուլ ընդ այնր զկալուածս բաժնի Իսրայէլացւոցն, զտունս նոցա եւ զայլ եւս ինչ նոյնպիսիս: — Այսպէս խաղացին որդիքն Իսրայէլի ի Ռամեսեայ ի կողմանս Սոկքովթայ (Խուղք) 600,000 այր հետեւակ՝ թող զմանկտի եւ զբազմամբոխ խառնաղանճն որ ել ընդ նոսա եւ զանասունս բազում (յամի իբրեւ 1500). եւ առին ընդ իւրեանս զհացն իւրեանց մինչ չեւ խմորեալ էր, եւ եփեցին յանթեղի. քանզի չետուն ոգի առնուլ Եգիպտացիքն[1]: Այսպէս հան Տէր ի միում աւուր զամենայն ազգն Իսրայէլեան յԵգիպտոսէ: Եւ Մովսէս եւ զոսկերսն Յովսեփայ ընդ իւր[2]:

Ի նմին աւուր պատուէր ետ Տէր ի ձեռն Մովսիսի Իսրայէլացւոցն՝ նուիրել նմա զամենայն արու անդրանիկ նախածին ի մարդոյ մինչեւ յանասուն, յիշատակ այնր զի խնայեաց նա յանդրանիկան նոցա՝ յորժամ եհարն զանդրանիկս Եգիպտացւոց, եւ եհան զնոսա հզօր ձեռամբ յերկրէն Եգիպտացւոց[3]:

## 103

Խաղացոյց Տէր զԻսրայէլացիսն ընդ ճանապարհ անապատին, քանզի չուեցին նոքա ի Սոկքովթայ (որ էր թերեւս տեղի ժողովելոյ ամենեցուն ի մի վայր), եւ հասին յԵթամ առ անապատին՝ որ առ եզերբ Կարմիր ծովուն կայ. "Եւ Աստուած առաջնորդէր նոցա ցերեկ՝ սեամբ ամպոյ, ցուցանել նոցա զճանապարհն, եւ զցայգ՝ սեամբ հրոյ, լուսատու լինել նոցա ի գնալն զցայգ եւ զցերեկ (ընդ անշէջն եւ ընդ անկոխ անապատն Արաբիոյ): Եւ ոչ պակասէր սիւն ամպոյն ի տուէ եւ սիւն հրոյն ի գիշերի՝ առաջի ամենայն որդւոցն Իսրայէլի"[4]: Այն տեսիլ զարմանալի՝ լինէր նոցա նշան ժողովելոյ եւ չուելոյ[5]. միայն ի վերայ գնդի Իսրայէլացւոցն երեւէր տեսիլն, թէպէտ եւ չէր ինչ անծանօթ Քանանացւոցն[6], եւ կաց մինչ 40 ամ առանց զկերպարանսն փոփոխելոյ, եւ առաջնորդէր Իսրայէլացւոցն[7]:

Այս որչափ այլակերպ էր այն սքանչելի առաջնորդ ճանապարհաց նոցա՝ ի սովորական օրոցն երեւութից; եւ կամ ի նշանակէ հրոյ կամ ծխոյ, զոր տային զօրավարք հնոց ժամանակաց նշան զօրաց իւրեանց: — Դարձուցք ի ծովն Կարմիր դառնել անդ զԻսրայէլացիսն. քանզի հրաման տուեալ էր նոցա Աստուծոյ՝ բանակել մօտ ի Փիհահիրովթ (Հերոյապոլիս, այս ինքն Կղաջաց քաղաք), զի առցեն զչափ զիւրոյ ամենազօր զօրութեան[8].

1 Ելից ԺԲ. 34, 37 — 39:
2 Ելից ԺԲ. 40, 41, 51. ԺԳ. 19:
3 Ելից ԺԳ. — 16:
4 Ելից ԺԳ. 17 — 22. տես ԺԳ. 19:
5 Ելից Ի. 34 — 36: Թուոց. Թ. 15 — 23:
6 Թուոց. ԺԴ. 14:
7 Նեեմ. Թ. 12, 19:
8 Ելից ԺԴ. — 4:

## 104

Այն ինչ չուեալ Իսրայէլացւոցն՝ շրջեցաւ սիրտն Փարաւոնի եւ խորհուրդ իշխանաց նորա։ — Պնդեցաւ զհետ նորա թագաւորն 600 ընտիր ընտիր կառամարտիկ կառօք եւ հեծելովք իւրովք եւ ամենայն զօրու իւրով, եւ եհաս նոցա առ Կարմիր ծովուն։ Զահի հարան Իսրայէլացիքն, բայց հանդարտեցուցանէր զնոսա Մովսէս ասելովն՝ թէ "Տէր տայ պատերազմ ընդ ձեր"։ Այսպ կարգեաց նա հրամանաւ Աստուծոյ զգաւազան իւր ի վերայ ծովուն, քանզի փառաւորել կամէր Աստուած ի Փարաւոն եւ յամենայն զօրս նորա. եւ հրեշտակն Տեառն որ երթայր առաջի Իսրայէլի՝ չոգաւ զկնի նոցա, նոյնպէս եւ սիւն ամպոյն եմուտ ի մէջ բանակի Իսրայէլացւոցն եւ ի մէջ բանակի Եգիպտացւոցն, եւ չկարէին խառնել նոքա ընդ միմեանս։ Իսկ եւ իսկ պատառեցաւ ջուրն, եւ հողմն արեւելից շնչեալ սաստկութեամբ զցայգն՝ ցամաքեցոյց զյատակս ծովուն։

Եւ մտին որդիքն Իսրայէլի ընդ մէջ ծովուն ընդ ցամաք, եւ էր ջուրն իբրեւ պարիսպ ընդ աջմէ նոցա եւ ընդ ահեկէ։ Պնդեցան Եգիպտացիքն, մտին եւ նոքա զկնի նոցա կառօք եւ հեծելովք։ Իսկ յառաւօտին պահուն հայեցաւ Տէր սեամբ հրոյ եւ ամպոյ ի բանակն Եգիպտացւոց եւ խռովեաց զբանակն նոցա, խափանեաց զանիւս կառաց նոցա եւ ընկէց զնոսա։ Ասեն Եգիպտացիքն, փախիցուք յերեսաց Իսրայէլի զի Տէր պատերազմի վասն նոցա ընդ Եգիպտացիս։ — Բայց Մովսէս ձգեաց միւսանգամ զձեռն իւր ի վերայ ծովուն հրամանաւն Աստուծոյ՝ յորժամ անցեալ էր Իսրայէլացւոցն յայնկոյս ծովուն, եւ դարձաւ ի վաղիւանդր ջուրն այդրէն ի տեղի իւր եւ ըմբռնեաց զԵգիպտացիսն ի փախստեան, ծածկեաց զկառս եւ զհեծեալս նոցա եւ զամենայն զօրութիւն Փարաւոնի, եւ ոչ մի ոք ապրեցաւ ի նոցանէ։ — Այսպէս փրկեաց Տէր յաւուր յայնմիկ զԻսրայէլ ի ձեռաց Եգիպտացւոցն. տեսին նոքա զդիակունս նոցա առ ափն ծովուն, եւ զձեռն մեծ զոր եցոյց Տէր ի վերայ Եգիպտացւոցն, եւ երկեաւ ժողովուրդն ի Տեառնէ, եւ հաւատացին յԱստուած եւ ի Մովսէս ծառայ նորա[1]։

## 105

Յայնժամ երգեաց Մովսէս եւ որդիքն Իսրայէլի օրհնութիւն Աստուծոյ, որ է առաջին երգ պուետէից ի ծանուցելոց մեզ, յօրինեալ յառաջնոյ պուետէ ի Մովսիսէ, որով օրհնէ զմեծամեծսն եւ զզարմանագործս Աստուծոյ՝ բարձրական իմն եւ աստուածեղէն եռանդմամբ[2]։

1 Ելք ԺԴ։ 2 Ելք ԺԵ։

Իսկ ընդ առաւօտն անկաւ ցօղ շուրջ զբանակաւն, եւ ընդ ցամաքել ցօղոյն՝ ահա մանրին ինչ ի վերայ երկրին նման եղեման, եւ ասէին որդիքն Իսրայելի զմիմեանս 'Մանհու,, այս ինքն Թէ՝ Զի՞նչ է այս: Եւ Մովսէս ասէ ցնոսա, այդ է հացն զոր ետ ձեզ Տէր: Կոչեցին զնա Իսրայելացիքն Մանանա. էր այն իբրեւ զգինձ, գոյն նորա՝ սպիտակ, եւ համ նորա էր իբրեւ զկարկանդակ մեղու եւ հալէր յարեւու[1]:

Արդարեւ իսկ են նշանակեալս այսոցիկ՝ նշանակք բնականն մանանայի որ ի Ջերմ աշխարհս ի բուսոց ինչ արտաքս ծորեալ իջանէ, կամ քրտնելով խիժն եւ ի հողմոց գիշերոյն թանձրանալով՝ միաւորեալ ընդ հալել առաւօտին ցօղոյ եւ նա ընդ նմին հալի, եւ կամ արուեստիւ հանեն զնա, եւ այն՝ միայն յՕգոստոս եւ ի Սեպտեմբեր ամսեան:

Իսկ զարմանալի Մանանայն (յորմէ այն մանանա առ գլորջաջուծն) էութեամբ իսկ այլակերպ է ի բնականէ անտի. քան հրամանին Մովսէսի պարտ էր ժողովել անտի իւրաքանչիւր ումեք աւուր աւուր այնչափ ինչ միայն որչափ ինքն եւ իւրքն բաւական էին ուտել. այս ինքն մի մի չափ իւրաքանչիւր ումեք. իսկ յաւուրն վեցերորդի ժողովել կրկին. եւ այն էին զարմանք զի որ առաւելն ժողովէր՝ ոչ առաւել ինչ ունէր, եւ որ պահէր ինչ ի նմանէ մնացորդ յայլ օր՝ եռայր ի նմա որդն, բայց միայն յաւուրն եւթներորդի՝ յորում ոչ իջանէր Մանանա, որպէս զչափ առեալ գիտացին անհնազանդքն յԻսրայելացւոց: Այսպէս ուտէին Իսրայելացիքն 40 ամ ամենայն ուրեք Մանանա. եւ էր այն նոցա փոխանակ հացի, որպիսի ինչ ոչ երեւի ի մանանայի անդ որ մեզ ծանօթ է[2]:

Եւ յիշատակ է սքանչելի կերակրոյն՝ հրաման ետ Մովսէս Ահարոնի առնուլ չափ մի ի Մանանայէն եւ պահել[3]: Մանանայն համարեցաւ միշտ առակ օրինակի նուիրական խորհրդոյ հաղորդութեան (ճշմարիտ երկնաւորն հացի) ըստ Քրիստոսի իսկ բանիցն[4]:

107

Խաղացին ի Սինն անապատէ ի Ռափիդիմ, ուր միւսանգամ տրտնջեցին վասն չգտանելոյ ջուր. ապա հրամանաւ ետ Տէր Մովսէսի հարկանել գաւազանաւն ի վերայ վիմին ի Քորեբ, եւ բխեաց ջուր ի վիմէն. բայց տեղւոյն անուն կոչեցաւ Մասսա, Փորձութիւն[5]:

Յետ այնորիկ դիմեցին ի վերայ Իսրայելացւոցն Ամաղեկացիքն. պատուէր ետ Մովսէս պաշտօնէին իւրում Յեսուայ խաղալ ի

1 Ելից ԺԶ. 14, 15, 21, 31: Թուոց ԺԱ. 7—9:
2 Ելից ԺԶ. 16 — 30, 35: Տես եւ Երկր. օր. Ը. 3, 16:
3 Ելից ԺԶ. 33 — 34:
4 Յովհ. Զ. 31, 32, 33, 49, 50, 59: Տես եւ Իմաստ. ԺԶ. 20:
5 Ելից ԺԷ. — 7:

վերայ նորա ընտիր ընտիր զօրօք, եւ ինքն ել հանդերձ Ահարոնիւ եւ Ովրաւ որդւովն Քաղեբայ (որ էր քեռայր նորա, որպէս կարծի) ի սար լերինն, եւ ամբարձեալ զձեռս իւր կայր յաղօթս մինչեւ յաղթէր Յեսու. բայց իբրեւ իջուցանէր Մովսէս զձեռսն՝ զօրանային Ամաղեկացիքն. վասն այնորիկ իսկ Ահարոն եւ Ովր (Հուր, Հուր) հաստատէին ի վեր զձեռս նորա մին աստի եւ միւսն անտի մինչեւ ցմուտս արեւուն, յորժամ պարտեաց զնոսա ամենեւին Յեսու:

Անդէն պատուիրեցաւ յառաջագոյն ի Տեառնէ բնաջինջ առնալոյ Ամաղեկացւոցն: Իսկ Մովսէս ուղղեաց սեղան եւ անուանեաց "Տէր ապաւէն իմ"[1]: Յետ յաղթութեանն չուեցին յանապատն Սինայի յերրորդում ամսեան ելանելոյ նոցա յԵգիպտոսէ, եւ անդ բանակեցան[2]:

Եկն անդր Յոթոր աներ Մովսիսի յերկրէն Մադիանու տեսանել զՄովսէս, զի լուեալ էր զզարմանալի չուոյն ժողովրդեանն Աստուծոյ. պատմեաց նմա Մովսէս մի ըստ միոջէ զգործսն Աստուծոյ եւ օրհնեաց Յոթոր զՏէր եւ մատոյց ողջակէզս Տեառն (կամ զի իսկզբանէ քահանայ Աստուծոյ ճշմարտի էր, եւ կամ ի Մովսիսէ ուսաւ ի ժամանակին զի առ նմա կամ առ հօր նորա բնակեալ էր Մովսէս): — Եւ իբրեւ ետես նա թէ չէ բաւական Մովսէս ինքնին միայն դատել զժողովուրդն, խրատ ետ նմա առնուլ արս ընտիրս ի ժողովրդենէ եւ կացուցանել զնոսա ի վերայ հազարաւորաց, հարիւրաւորաց, յիսնաւորաց եւ տասնաւորաց ժողովրդեանն զի դատեսցին զժողովուրդն (հազարապետս, հարիւրապետս, յիսնապետս, տասնապետս), եւ միայն յորս ինչ մեծամեծս ինքնին վճարել զդատաստանն: Եւ արար Մովսէս խրատուն[3]:

## 108

Առ լերամբքն Սինայի ուր կայր գտանել արօտ բազում եւ առատութիւն ջուրց եւ երկիր պտղաբեր՝ մնացին իբրեւ ամ մի (1500—1499), եւ անդ ընկալան Իսրայելացիք օրէնս յԱստուծոյ: Իսկ եւ իսկ յետ անդր հասանելոյ՝ ել Մովսէս ի գլուխ լերինն Սինայի եւ խօսեցաւ ընդ նմա Տէր երթալ ազդ առնել որդւոցն Իսրայելի թէ "Դուք ձեզէն տեսէք՝ որչափ ինչ արարի ընդ Եգիպտացիսն. եւ առի զձեզ իբրեւ ի վերայ թեւոց արծուոյ եւ յածեցի զձեզ առ իս: Եւ արդ եթէ լսելով լուիցէք ձայնի իմում, եւ պահիցէք զուխտն իմ, եղիջիք դուք ինձ ժողովուրդ սեպհական յամենայն ազգաց, զի իմ է ամենայն երկիր. եւ դուք եղիջիք ինձ ի թագաւորութիւն, եւ ի քահանայութիւն եւ յազգ սուրբ":

1 Ելից ԺԷ. 8—16:
2 Ելից ԺԹ. 1, 2:
3 Ելից ԺԸ: Տես Երկրորդ. օր. Ա. 10—17:

Կոչեաց Մովսէս առ ինքն զծերս (զցեղապետսն եւ զատաւո-րեալս) եւ խօսեցաւ առաջի նոցա զամենայն զպատգամսն· եւ նոքա յանձն առին յօժարութեամբ ընդունել զօրէնսն Աստուծոյ։ Ապա կարգեաց Մովսէս սրբել եւ պատրաստել զերիս աւուրս տօնա-պատրաստութեան։ — Եւ յաւուրն երրորդի ընդ առաւօտն հնչիւն ահագին հասանէր ի լեռնէ անտի իբրեւ զբարբառ փողոց· եւ ամպ միգախառն ծածկեալ ունէր զլեռանն, եւ լինէր որոտումն եւ սաստիկ սաստիկ փայլատակմունք ընթանային։ Եւ ամենայն լեռանն Սինայի ծխէր իբրեւ զհնոց բորբոքեալ, քանզի իջեալ կայր Աս-տուած ի վերայ նորա հրով, եւ ահագին էր տեսիլ լերինն, քան-զի հասանէին ձայնք փողոցն ի բաց յառաջեալք եւ սաստկա-ցեալք յոյժ։

Եհան կացոյց Մովսէս զժողովուրդն զստորոտով լերինն եւ պատուէր ետ մի մերձել այլ եւս յառաջ· ապա ել նա ընդ եղբօր իւրում Ահարոնի ի բարձրութիւն ինչ լերինն։ Յետ այնորիկ այնպիսի ահագին եւ բարձրական տեսլեանցն՝ որովք պատշաճա-գոյնս յայտնի եւ ամենեցուն ծանօթ լինի աներեւոյթ Աստուա-ծութիւնն, քարոզեաց եւ յայտ արար (ըստ բանիցն Մովսիսի) զտասն գլխաւոր օրէնսն կամ զտասնհրամանեան պատուիրանսն[1]։

## 109

Բայց ամենայն ժողովուրդն որ տեսանէր զփառսն Աստուծոյ եւ լսէր՝ զահի հարան, խորշեցան եւ կացին ի հեռաստանէ, եւ ա-սեն ցՄովսէս· «Դու խօսեաց ընդ մեզ՝ եւ լուիցուք· եւ մի խօ-սեսցի ընդ մեզ Աստուած, զուցէ մեռանիցիմք»։ Այսու թողին նմա զիշխանութիւն օրէնսդրութեան։ — Իսկ Մովսէս ասէր· «Քաջալերեցարուք· զի վասն փորձելոյ զձեզ եկն առ ձեզ Աս-տուած· որպէս զի լինիցի երկեւղ նորա ի ձեզ, զի մի մեղանչիցէք»։ Ապա եմուտ Մովսէս ի մէջն եւ ի մառախուղն ուր էրն Աստուած։

Ընդ հրամանն այսր նմա Տէր նախ կանգնել սեղան եւ մատու-ցանել զոհս· ապա ընծայեցուցանէր ազգի ազգի օրէնս առ ի զիւրութիւն գլխաւորն օրինաց· կարգեաց նա զտօն շաբաթուն եւ զերիսին տօնսն գլխաւորս, եւ խոստացաւ բարութիւնս վասն պատուիրանապահացն[2]։

Զայս ամենայն պատմեաց Մովսէս առաջի ժողովրդեանն յա-ժամ դարձեալ ի լեռնէ անտի, եւ խոստացաւ ժողովուրդն պահել զամենայն։ Իսկ Մովսէս գրեաց զբանս Տեառն ի մատեանի, շինեաց սեղան երկոտասան սեամբք ըստ թուոյ երկոտասան ցեղիցն, եւ ետ մատուցանել ողջակէզս ի ձեռն երիտասարդաց· ապա ընթեր-ցաւ նա զգիր ուխտին լու ի լու ժողովրդեանն, եւ ետ պատասխանի

1 Ելից ԺԹ. Ի.—17.   2 Ելից Ի. 18...—ԻԴ.

ժողովուրդն. «Զամենայն զոր խօսեցաւ Տէր՝ արասցուք եւ լուիցուք»։ Եւ Մովսէս սրսկեաց արեան զսեղանովն եւ զժողովրդեամբն առ ի հաստատութիւն ուխտին։

Ապա ել Մովսէս միւսանգամ հրամանաւ Աստուծոյ ի լեառն Սինայի եւ եղեւ անկերեւոյթ յաչաց ժողովրդեանն, եւ մնաց անդ քառասուն տիւ եւ քառասուն գիշեր[1]։ Ի ժամանակին յայնմիկ տայր նմա Տէր զօրէնսն յօրինուածութեանց, այսինքն պատուէրս վասն կարգելոյ եւ յօրինելոյ պաշտամունս Աստուծոյ հրապարակաւ, վասն տապանակի ուխտին, վասն վրանին ժամու, վասն քահանայից եւ այլոց եւս նմանապիսեաց[2]։ Եւ իբրեւ դադարեաց Աստուած ի խօսելոյ, ետ նա Մովսէսի երկուս տախտակս օրինաց քարեղէնս՝ գրեալս մատամբն Աստուծոյ[3]։

## 110

Բայց յայժ յերկարագոյն թուեցաւ Իսրայելացւոյն՝ յամելն Մովսէսի. այսպէս համարէին թէ մեռաւ։ Նմին իրի կուտեցան ի վերայ Ահարոնի եւ ասեն. «Արի եւ արա մեզ աստուածս՝ որ առաջնորդեսցեն մեզ»։ Այրն աստուածապաշտ Ովր՝ թուի թէ վասն ընդդէմ գտանելոյ ժողովրդեանն խռովելոյ՝ սպանեալ լիցէ։ — Իսկ Ահարոն զիջաւ առ ահին։ Ետ նա ածել զգինդսն իւրեանց ոսկիս (զի թերեւս այնպիսի դժուարին խնդրով՝ դարձուսցէ զնոսա ի խորհրդոյ անտի[4]) եւ գործեալ կերպարանս եզին՝ ըստ նմին գործեաց որթ ձուլածոյ, եւ բարբառ արձակեալ գոչեաց ժողովուրդն ուրախութեամբ. «Այս են աստուածք քո, Իսրայէլ, որ հանին զքեզ յԵգիպտոսէ»։ Եւ կանգնեաց Ահարոն սեղան։ Ի վաղիւ անդր մատուցին զոհս Իսրայելացիքն. ապա կերան եւ արբին եւ յարեան ի խաղալ[5]։

Պաշտօն որթոյն նմանութիւն իմն էր պաշտաման Ապիսայ կամ եզնջոյն, եւ որպէս Ապիսն նշանակ էր Ոսիրեայ եւ արեգականն, որ պաշտօն առնուին յՈն եւ ի Մեմփիս, նոյնպէս եւ որթն Ահարոնի՝ նշանակ կալոց էր ճշմարտին Աստուծոյ, եւ լինել փոխանակ սեան ամպոյն եւ հրոյ որ հանդուցեալ էին ի վերայ Սինայի, բայց ի դէպ է թէ բազմաց ոչ նշանակ լոկ այն եղեւ, այլ կուռք։

Ինքնին իսկ Տէր իմացոյց Մովսիսի ի լերինն թէ յանցեաւ ժողովուրդն, եւ սպառնայր ջնջել զնոսա. բայց մեղմեցաւ մեծաւ պաղատանօք ծառային իւրոյ Մովսիսի։ Էջ նա ի լեռնէ անտի եւ մօտ հասեալ ի բանակն՝ ետես եւ լուաւ զամպարշտութիւն նոցա, լի եղեւ սրտմտութեամբ, ընկեց ի ձեռաց զտախտակսն եւ խորտակեաց զնոսա. ապա առեալ խարտեաց մանր զորթն եւ

1 Ելից ԻԴ։
2 Ելից ԻԵ—ԼԱ։
3 Ելից ԼԱ. 18։
4 Աւգոս. եւ Թէոդ.։
5 Ելից ԼԲ. — 6։

ցանեալ զփոշին ի վերայ ջրոցն՝ ետ ըմպել նոցա։ Յետ այնորիկ ի մի վայր գումարեալ զՂեւտացիսն, հրաման ետ վառել պատերազմ եւ զգլխաւորս յանցաւորացն անդէն յիւրեանց ազգականաց անտի կոտորել։ Եւ անկան յաւուր յայնմիկ 3000 այր յԻսրայէլէ ըստ Եբրայեցւոյն եւ ըստ Եւթանասնիցն, 23,000 այր՝ ըստ Հասարակաց օրինակին Լատինացւոց [1]։

## 111

Կանգնեաց այնուհետեւ Մովսէս վրան առանձինն արտաքոյ բանակին, յորոյ վերայ իջեալ նստէր սիւնն ամպեղէն յորժամ մտանէրն Մովսէս ի ներքս խօսել ընդ Տեառն. «Եւ խօսէր Տէր ընդ Մովսիսի դէմ յանդիման, որպէս ոք զի խօսիցի ընդ բարեկամի իւրում»։ Եւ եղեւ իսկ արժանի տեսանելոյ զփառսն Աստուծոյ, այս ինքն զհանդերձեալ անցս մարմնաւորութեան Որդւոյն Աստուծոյ եւ զեկեղեցւոյ նորա։

Արար նա այլ եւս նոր տախտակս քարեղէնս հրամանաւն Աստուծոյ, եւ ել ի վաղիւ անդր ի գլուխն Սինայի։ — Անդ երեւեցաւ Տէր, եւ միւսանգամ պատուիրեաց հրամանս բազումս եւ գրեաց զօրէնս իւր ի տախտակսն նորա։ Եկաց Մովսէս դարձեալ զ40 տիւ եւ զ40 գիշեր ի վերայ լերինն Սինայի, ոչ եկեր եւ ոչ արբ։ Յորժամ էջ նա ի լեռնէ անտի՝ փառաւորեալ էին երեսք նորա եւ արկանէր նա քող զերեսօքն յորժամ խօսէր ընդ ժողովրդեանն [2]։

Եցոյց Մովսէս Իսրայէլացւոցն զամենայն զոր խօսեցեալ էր Աստուծոյ. եւ շինել զվրան ժամուն եւ կազմել զամենայն զկահ նորա [3]։ Իբրեւ կատարեցաւ ել ամենայն ի գլուխ՝ ծածկեաց սիւն ամպոյն եւ հրոյն զվրան ժամուն, զԱկրութիւն Իսրայէլացւոցն, եւ փառքն Տեառն լցին զտեղին։ Եւ այն ամպ նշան լինէր այնուհետեւ դադարելոյ եւ չուելոյ Իսրայէլացւոցն [4]։

Յետ պատուիրելոյ Տեառն զՄովսէս զազգի ազգի ազգս պատարագաց եւ զօրինակ մատուցանելոյն եւ զկարեւոր ինչ իրս վասն նոցա [5], Ահարոն եւ որդիք նորա կարգեցան ի քահանայապետութիւն եւ ի քահանայութիւն հանդերձաւորութեամբ եւ օծանելով զնոսա իւղովն սրբով եւ պատարագաւն՝ որոյ արիւնն սրսկեցաւ զնոքօք [6]։ Յետ մատուցանելոյ Ահարոնի զիւր զառաջին պատարագս, ապա երեւեցան փառքն Աստուծոյ եւ մաշեցին զողջակէզն [7]։

Այն իսկ էր հուրն սրբութեան եւ նովին եւեթ պարտ էր վառել ի պաշտամանն։ Նմին իրի յորժամ յետոյ Նադաբ (Նա-

1 Ելից ԼԲ. 7—30։
2 Ելից ԼԳ, ԼԴ։
3 Ելից ԼԵ—Խ։
4 Ելից Խ. 33—36։ Թուոց. Թ. 15—23։
5 Ղեւտ. Ա—Է։
6 Ղեւտ. Ը։
7 Ղեւտ. Թ։

բաղ) եւ Աբիուդ երիցագոյն որդիք Ահարոնի հուր օտարածնու արկին ի կիր, այրեցան ի հրոյ անտի որ ել ի Տեառնէ։ Նա եւ զի յետ այսց դիպաց անդէն օրէնք եդան թէ մի արբցեն քահանայքն գինի կամ օղի նախ քան զգործ պաշտամանն իւրեանց՝ այսպիսիկ ինչ դոյ առնուլ ի միտ, թէ Նադաբն եւ Աբիուդ արբեալ լեալ իցեն [1]։

Յորժամ էին տակաւին առ լերամբն Սինայի՝ ընկալաւ Մովսէս եւ զայն եւս հրամանս որ կան ի Ղեւտական գիրսն՝ վասն պէսպէս քաղաքային եւ աստուածպաշտութեան պարագայից եւ սահմանադրութեանց [2]։

## 112

Ի սկզբան ամսոյն երկրորդի ելանելոյ յԵգիպտոսէ՝ բաժանեցան Իսրայէլացիքն ըստ Աստուծոյ հրամանին ի ցեղս եւ ի տունս, եւ եղեւ առաջին հանդէս համարոյ նոցա, եւ գտան արք պատերազմի 603,550։ Սոքա ամենեքեան երկոտասան ցեղք էին ըստ երկոտասան նահապետաց ցեղիցն։ Իսկ ցեղն երեքտասաներորդ Ղեւեայ՝ յետ լինելոյ նորա առանձինն հանդէս համարոյ գտաւ 22,300 այր, եւ բաժանեցաւ յերիս կարգս եւ իւրաքանչիւր կարգի սահմանեցաւ գործ առ սպաս պաշտամանն Աստուծոյ [3]։

Յետ կատարելոյ ժողովրդեանն ըստ Աստուծոյ հրամանին յամսեանն առաջնում զտօն Զատկին [4], եւ ի գլուխ հանելոյ զպատրաստութիւն չուոյն, խաղացին յամսեանն երկրորդում ի Սինայէ յետ միոյ ամի, եւ չուեցին ընդ հիւսիսի յանապատն Փառանու, ուր առաջնորդէր նոցա Յոբաբ (որ եւ Յոթոր՝ ըստ ոմանց) աներն Մովսէսի ըստ խնդրոյն Մովսէսի [5]։ Յայսմ արշաւանի ձանձրացեալ Իսրայէլացւոցն ի Մանանայէ սկսան ցանկանալ մսոյ եւ տրտնջել զՏեառնէ, եւ ընկալան պատուհաս հրոյ որ այրեաց զմասն մի բանակին [6]։ Իսկ Մովսէս ծանրացեալ ի բազմաթախանձ հոգոց առաջնորդութեան ժողովրդեանն՝ համարձակեալ եցոյց առաջի Աստուծոյ թէ չկարէ ինքն միայն բաւական լինել ծանրութեան բեռինն։ — Ասէ յայնժամ Տէր ցՄովսէս ընտրել ի ծերոց ժողովրդեանն եւթանասուն այր եւ ժողովել զնոսա առ վրան ժամուն։ Իբրեւ ի գլուխ հան Մովսէս զհրամանս Աստուծոյ՝ էջ Տէր ամպով, եւ որպէս խօսեցեալ էր յառաջագոյն՝ բաժանեաց ի հոգւոյ անտի Մովսէսի եւ ետ արանցն, եւ իսկ եւ իսկ վաղվաղակի երեւեցան արդիւնք հոգւոյն ի նոսա [7]։ Այսպէս առաջին խրատն Յոթորայ այժմ ուրեմն առ զօրութիւն եւ հաստատութիւն [8]։

1 Ղեւտ. Ժ։
2 Ղեւտ. ԺԱ — ԻԷ։
3 Թուոց. Ա — Դ։
4 Թուոց. Թ. 1 — 5։
5 Թուոց. Ժ։
6 Թուոց. ԺԱ. 1 — 6։
7 Թուոց. ԺԱ. 10 — 17, 24 — 30։
8 Տես Ելից ԺԸ. 13...։

թուին յետուստ ուրեմն առ ժամանակօք ծննդեանն Քրիստոսի ի կարգ եւ ի յարդարումն ածեալ՝ արկանելով ի կիր եւ զհին ինչ ժողովածոյս առասպելաց։ Բայց ամենեւին կատարեալ ժողովածոյք Եզովպեան առասպելացն ի 14երորդ դարու եղեւ։

Գ.. Մըմընջական բանաստեղծութիւն կամ քնարական յանձուկ միտս՝ էր ամենեւին կապեալ ընդ երաժշտութեան եւ կաքաւոյ. եւ նկարագիր նորա է՝ պէսպէս այլակերպութիւն չափոյ, բաժանմունք դարձուածոց, եւ թիւ իմն եւ համար՝[1] պատշաճեալ յերգ եւ ի պար։ Դորիացի քնարականն զոր Դորիացիքն ի Պեղոպոնեսոս եւ ի Սիկիլիա ածին ի կատարումն՝ էր կապեալ մանաւանդ ընդ պաշտամանց Ապողոնեայ Դորիացւոց, յորոյ տօնան երգք գովութեանց[2] ընդ պարուց եւ օրհնութիւնք[3] հնչէին։ — 1. Ալկմանոս է գլուխ դորիացի պոէտաց (640) ի Սարդիացւոց քաղաքէ, այլ բնակեալ նախ ի Սպարտա իբրեւ ծառայ եւ ապա ազատեալ. յերգսն նորա որ յօրէնս անդրադարձ դարձուածոց[4] հաստատեալ կան՝ երեւին պայծառագոյն քաղաքային եւ զգաստական կեանք Սպարտացւոց։ 2. Վաղ պայծառանայր եւ Ստեսիքորոս (600) ի Հիմերա ի Սիկիլիացւոց աշխարհին համբաւաւոր եւ յորդ եւ առատ երգովքն՝ յորս վիպականն նիւթք (զրոյցք դիւցազանցն) ածեալ են յաջողութեամբք ի քնարական կերպարանս։ — Այլ ամենեւին կատարեալ երեւի մըմընջական բանաստեղծութիւն առ Եւոլացւոց ի փոքրն Ասիա, ուր այն բանաստեղծութիւն ոչ այնչափ ընդ հրապարակական պաշտամանց, այլ ընդ ընկերական կենաց էր կապեալ։ Եւոլացի քնարականսն երեւելիք էին՝ — 3. Ալկէոս Միտիլենացի (600) անուանի ոչ միայն իբրեւ երգեցիկ այլ եւ պատերազմող քաջ ի վերայ ազատութեանն Լեսբիացւոց. քանզի հակառակորդ էր Պիտտակոսի բռնաւորի Լեսբոս կղզւոյ, հարկ համարէր հեռանալ առ ժամանակ մի ի հայրենեաց անտի, մինչեւ հաշտեալ ընդ նմա՝ լինէր թողութիւն դառնալոյ այսրէն։ Երգք նորա մերթ զվշտաց աքսորանաց են եւ մերթ զուրախարար գինւոյ։ — 4. Սափփոյ Միտիլենացի (600) կին երգեցիկ համբաւեալ երգովք տենչանաց։ Ի սմանէ զատաւ Սափփեան չափ որպէս եւ ի նմանէ Ալկայեանն։ 5. Անակրէոն ի Տէոս քաղաքէ Յոնիացւոց (400) ի փառաւոր արքունիս Պողիկրատեայ բռնաւորի Սամիացւոց էր, եւ ապա կոչեցաւ յԱթէնս ի պիսիստրատեանն Հիպպարքեայ։ Սա է առաջին օրինակ տենչականն բանաստեղծութեան, այնու զի յերգսն իւր որ բազում իմն են եւ ազնիւ իմն բարբառով, գեղեցիկ ձեւովք եւ գունակ գունակ չափովք, համակ զվայելչութիւն կենաց եւ զուրախութիւն ցնծութեան յարգեալ գովէ։ Մեծ մասն Անակրէոնեան երգոցն զոր ցայժմ ունիմք՝ յորս ծեր այր հանեալ

1 Rhythme. 2 Péan. 3 Hymne. 4 Antistrophe.

յաղթս կեղեցած կայծոզք զկենաց՝ մանկունք ի զինս երգասաց-դութեան իւրն ուրախութեամբ, ոչ նորա են այլ ի վերջին ժամանակս ի նորա անուն յօրինեալ։ Աստուածեղագոյն քան զամենայն երգս քնարականաց են Սիմոնիդեայն եւ Պինդարեայն որ ընդ միմեանս մրցէին, եւ երկոքին եւս վարձկանութեամբ երգէին զերգսն։ 6. Սիմոնիդէս (556—469) էր ժամանակս յորժամ յԱթէնս ի մէջ պատերացն որ զՈլիմպիականս ժողովեալ էին. յետոյ չոգաւ յաշխարհն Թեսաղացւոց ուր վարձու երգէր մեծատուն իշխանացն Աղեւադեանց եւ այլոց մեծամեծաց, եւ այնպէս անձնոյն անուն վաստակեան իբրեւ ողբերգիչ եւ ստորակապաս իշխանաց։ Նա Պարսից պատերազմօք զորոց երգեաց բազում ինչ գեղեցիկ՝ կարծ նա յԱթէնս եւ էր ընտանի Թեմիստոկլեայ, եւ ապա եւս գնաց յարքունիս Հերոնայ բռնաւորի Սիրակուսացւոց, եւ անդ յետ պակելոյ իբրեւ յաղթող ի մրցութիւնս պատերացն՝ ի կենաց վախճանէր։ Արշաւի զարմանան հեռք ընդ ճարտարութիւն նորա, դոյնչափ դատափեա աանեն զնա վասն ագահութեան։ Սակայն երգք նորա չքնաղանեն ուրեք հեռս վարձկանութեան. ողորկութեամբն եւ փափկութեամբ երեւելի են, բայց զՊինդարեան եռանդմանն չունին նշմարանս։ —7. Պինդարոս Բեովտացի, ի Կիւնոս Կեփաղիս մօտ ի Թեբէս (521—441) հռչակաւոր քնարական տոհմային պարէս Յունաց, զոր ոչ միայն արքունիք իշխանաց եւ տունք մեծատուն ազնուականացն խնդրէին եւ պատուէին, այլ եւ բազում քաղաքք ամենապետականք։ Դրացեալ պայծառացաւ նա յամենայն ազգս քնարական բանաստեղծութեան, սկսեալ յեռանդուն գովութեանցն նուագաց եւ յԱրկադուան մեծավերջ երգոցն Դիոնիսեայ՝ մինչեւ ցնուագս ուրախութեան սեղանոյ[1]։ Բայց մարգարիտք բանաստեղծութեան նորա են երգքն յաղթականաց[2] ի փառաւորութիւն այնոցիկ որ յաղթողն պսակեցան ի մեծ տոհմային խաղսն Ողիմպիայ, Պիւթեաց եւ այլուր։ Այս երգք յաղթութեան նուագեալ հնչէին կամ անդէն յասպարիզի անդ մրցութեանն, կամ ի ճեմելն[3] ուրախութեամբ յետ խաղուցն, կամ ի բերելն զյաղթականն, կամ ի մտանել նորա ի հայրենի քաղաքն եւ կամ ի տօնի գոհութեանն ի մեհենի ուրեք։ Պինդարոս համեմատէր յերգս անդ զպարծանս յաղթողին ընդ անցելոց ժամանակաց ցեղին նորա եւ քաղաքին ուստի նայն էր, եւ յարդարէր միշտ արժանի պատուոյն այնմիկ զնալ եւ զօգուտն անտի ցուցանել, զանձնապակութիւնն զայն որ ի մրցութեան անդ ցուցաւ՝ այլովք եւս առաքինութեամբք մանաւանդ դիւցապաշտութեամբ ազնուագոյն գործել։ Վեհանձն ջերմ եւ եռանդուն ցնորք նորա յանդընդնդական իւր նմանութիւնս եւ համեմատութիւնս տանին զնա, եւ յանկարծուստ իբր յայլ եւ յայլ իրս փոփոխեն՝ բազում անգամ

[1] Σκολιόν, Chanson à la ronde. [2] Ἐπινίκια. [3] Κῶμος.

մթին իմն եւ չիմանալի զբանսն գործեն. յայն սակս եւ անդէն առ նախնեօք գրեցան վասն նոցին մեկնութիւնք:

Երաժշտութիւն եւ Կաքաւ՝ նորին գուսար՝ ընթանային կից ընդ քնարական բանաստեղծութեան: Երկոքին եւս գիրկընդխառն էին ընդ պաշտամանց եւ կրօնից Յունաց, այնու զի յամենայն իսկ տօնս երգք եւ կաքաւք պարաւորաց՝ երիտասարդաց եւ կուսանաց լինէին: Կրօնիցն պարք ծանրագոյն իմն էին իբրեւ չափով շարժելով շուրջ զբագնեօք. սակայն ըստ այլակերպութեան տօնիցն՝ եւ ձեւք կաքաւուցն էին՝ մինչեւ ցհապաւական իսկ կաքաւսն որովք աստուածոցն եւ դիւցազանցն գործք նշանակէին: Հինքն Յունաց մեծ իմն զօրութիւն յորդորիչ, զգաստացուցիչ եւ կրթիչ համարէին երաժշտութեան (յայն սակս եւ օրէնսդիրք Յունաց պատուիրէին վարել նովին առ ազնուագոյն զբարոն գործելոյ), նմին իրի ի դէպ է թէ եւ այս արուեստ ի բարձրագոյն իմն աստիճան կատարման էր հասեալ առ նոսա, թէպէտ եւ չեցեալք ինչ ճշդիւ տեղեակ մեզ հանգամանացն: — Նոյն յօրինիչ յունական երաժշտութեան համարի Տերպանդրոս Լեսբացի, որ ի Սպարտա եւ յայլ եւս քաղաքսն Յունաց առ զյաղթութիւնն յերաժշտական մրցութիւնս, եւ զքնարն չորեքաղի արար եւթնաղի: Հաւանութեան իմն է թէ նա սահմանեալ կարգեաց զհամեմատութիւն հնգաքանչիւր ազգաց ձայնիցն[1], որ յառաջին երեք եւեթ էին այս ինքն ծանր եւ տօնական դորիացին, շառաչուն եւ ցնորեցուցիչ փռիւգացին, եւ լիւդացին մեղմականութեամբն դարձուցիչ ի հեզութիւն. յորս յետոյ յաւելան յոնիականն թոյլ եւ կակուղ, եւ եւոլականն եռանդուն եւ առոյգ: — Յոյնք արկանէին մանաւանդ ի կիր նուագարանս աղեաց՝ զավլին եւ Ջնար[2] եւ սրինգ որ ի Փռիւգիայ ածաւ ի Յունաց աշխարհ:

## 279

ԴՐԱՄԱՏԻԿԱԿԱՆ բանաստեղծութիւն: Առ ժամանակօքն Պերիկլեայ ած կատարումն բանաստեղծականն: Սկիզբն նորա ի պաշտամանց անտի Դիոնիսեայ է, յորս ի սկզբանն քնարական երգս ի պատիւ Դիոնիսեայ կաքաւուք նուագէին, եւ սակս սակաւ երբեւ սովորութիւն զցուցեալսն երգովք՝ խօսիւք եւ գործովք եւս յանդիման կացուցանելոյ: Թեսպիսայ Իկարիացւոյ ի ժամանակին Սողոնի ասեն նախ զայս արարեալ. քանզի սա իբրեւ մենախօսութիւն[3] մուծեալ պատմէ զառաջինն՝ զմի զոք իբրեւ խաղալիկ պատմել առասպելս ինչ ի դիոնիսեան զրուցաց:

Ա. Ողբերգական բանաստեղծութեան երեքին իշխանք առ Պարսից պատերազմօք եւ ի յաջորդ տասնամեակսն ծաղկեալ պայծառանային. Եսքիւղոս, Սոփոկլէս եւ Եւրիպիդէս, որոց զէն

1 Ἁρμονία. 2 Barbiton. 3 Monologue.

եւս սակայն էր ի պատերազմին Սաղամինայ՝ յորում Էսքիւղոս 48ամենի կռուէր ի ծովամարտ, եւ Սոփոկլէս 18ամենի ի տօնի անդ յաղթութեան՝ էր ի պարու երիտասարդացն, իսկ Եւրիպիդէս անդէն ի նմին աւուր ծնանէր։

1. Էսքիւղոս Աթենացի (525—456) յաւելեալ միւս եւս խաղացող եւ զԵրկախօսութիւն[1], եւ այնպէս եղեւ բուն յօրինիչ ողբերգական արուեստին։ Յեւթն հատուածս անդ գործոցն Էսքիլեայ նշմարի հզօրագոյն ժամանակ պատերազմացն Պարսից, յորում խորհուրդք ազատութեան եւ հայրենեաց ի մեծամեծ գործս ածին զՅոյնս։ Ամենայն ուրեք եռանդուն իմն բանաստեղծական եւ տօնական իմն բարբառ հնչէ, երկեւղ ի դից եւ ակնածութիւն ի հին քաղաքային կարգաց։

Ի հատուածն զոր այժմ ունիմք՝ (քանզի թիւ գործոց նորա աւելի լեալ 70 կամ 90) երեքինս՝ «Ագամեմնոն», (այս ինքն՝ դարձ նորա ի Տրովայ եւ սպանումն ի Կղիտեմնեստրայ եւ յԵգիսթեայ), «Քոյեփորք», (վրէժխնդրութիւն մահու Որեստեայ հօր իւրոյ) եւ «Եւմենիդեանք», (հալածումն Որեստեայ յԸնդղէայից եւ յետոյ ուրեմն արձակել նորա վճռով Արիոպագեայ, որով այն մեծարոյ ատեան պաշտպանի ի թշնամանաց ռամկապետացն տաճնորդելոց ի Պերիկլեայ) ունին կապ ընդ միմեանս եւ կազմեն Երեքխօսութիւն[2]։ «Պրոմեթեւս ի կապանս», ներկայէ զմեծաման որովք ասպետին տիտանեանն այն կապեալ շղթայիւք ի Կաւկասոս յԱրամազդայ, վասն հրոյն զոր գողացեալ յաստուածոցն եւ մարդկան։ Ի սմին պատմի մի բան միայն մարդ պատերազմի՝ մարդկան յասացելոց յիւրեանց զօրութիւն ընդդէմ բարձրագոյն զօրութեան ճակատագրի նշանակելոյ ամենատերամին Արամազդաւ. եւ սատանց երկբայութեան է՝ թէ լուծումն իմն այսր հատածոյ բանաստեղծութեան կայցէ յայլում իմիք հատածի կորուսելոյ որ անուանեալ կոչի «Պրոմեթեւս ազատեալ», յորում լեալ իցէ խոստ վարդապետութեան եթէ այսպէս է կարգ աշխարհիս՝ հպատակել մարդկերէն կամաց ընդ աստուածեղէն կամօք։ «Պարսիկք», ցուցանեն զմեծամտութիւն եւ զպարծանս բանաստեղծին ընդ այն՝ զի այնպէս յաղթութեամբ զառ եղեւ պատերազմացն Պարսից։ «Եւթանեքին ի վերայ Թեբայեցւոց», ճառեն զկռուոյ եւ զսատակմանէ երկուց եղբարց թշնամացելոց ի Թեբայեցւոց քաղաքին, եւ «Որ պաշտպանութիւնն խնդրեն», է զոյգ ինչ ի զբօսանաց Դանաւոսի՝ որ 50 դստերօքն փախուցեալ յԵգիպտոսէ, եւ յԱրգոս խնդրէր պաշտպանութիւն։ — Մեռաւ Էսքիւղոս ի Սիկիլիա յոր երթեալ առեն՝ առ տրտմութեանն թէ ռամկապետութիւն յաղթեաց, եւ կամ զի յաղթեաց նմա Սոփոկլէս յողբերգութեանն մրցութեան։

2. Սոփոկլէս ի Կողոնոսէ մօտ յԱթէնս (456—405) եմոյծ միւս եւս երրորդ խաղացող հանդիսական եւ աւելի կարծեաց զպարաւորսն։ Էր նա ազնուական ծնընդեամբն, մասամբ եւ մարմնով առաւելութեամբ եւ կրթութեամբն եւ ուսմամբ թեքեալ՝ հան զարուեստն բանագործական ի կատարեալն գեղեցկու-

1 Dialogue. 2 Trilogies.

տաղերգն եւ երկրորդ փոխադրութեամբ՝ յետուստ ուրեմն ի ձեռնաթեանն կոչեցաւ յՈրքեստրայ արքայէ Մակեդոնացւոց. անդ խածառեալ յօրինակն բարակաց գրգռելոյ ի վերայ նորա ի նախնահօրցաց իւրոց՝ վախճանէր։ Մեծ մասն բանաստեղծութեանց նորա է հիւսեալ խորամանկութեամբք եւ նենգութեամբք, եւ լուծումն նոցա է աստուածական յանկարծակի իմն դարձմամբ (զաստուածոցն ի մեքենայէ[1] իջուցանելով ի խոնարհ զի միջամուխ լեալ յիւրն՝ լուծանիցէ զդժուարութիւնն)։ Եւրիպիդէս իբրեւ փիլիսոփայ սկեպտիկեան չցուցանէ երկիւղածութիւն աստուածոց, այլ ծիծաղի զհաւատովք ամբոխին։ Նա մեծ զուարթութիւն յառաջարանս իւրք տայ առնուլ ի մէջ զհամառօտութիւն իրացն որ ի հանդիսի անցանելոց իցեն։ Թէպէտ եւ դատաւորքն գուն ուրեք տային նմա զյաղթութիւնն ի մրցանսն՝ այնու զի մեծամեծ իմն եւ ճարտարախօսութեան ձեւովք վարէր յաճախ, սակայն յայտ հանճ էին ամբոխին բանաստեղծութիւնք նորա, եւ բազում ինչ մերձիք եւ բանս ի նոցանէ ուսեալ էր ամբոխն ի բերան, եւ ճարտարախօսք եւս եւ որ յետ նորա ողբերգուքն կացին՝ ուսանէին առեալ ի նորա բանաստեղծութեանցն։ Բայց անդէն առ Եւրիպիդեաւ իսկ երեւի սկիզբն եղծման արուեստին։

Թատրոնքն Յունաց էին մեծ եւ ընդարձակ, քանզի անդէն լինէին երգեմն եւ ժողովք ժողովրդեան. շինեալ էին նոքա ըստ յաճախ սովորութեան ի վերայ բարձրաւանդակաց, մանէին գեղեցիկ նայեցեալ ի ծով եւ ի քաղաքն անդր։ Ներքին կողմն թատերցն բաժանէր՝ 1. ի կէս բոլորակ աշտիճանս որ աթոռովք վասն հանդիսատեսացն, 2. ի կարաւանին վասն պարուց, եւ ի մէջ անդ բագին մի Դիոնիսեայ, 3. ի բեմն որ էր նեղ երկայնաձեւ չորեքկուսի տախտ ինչ մերձ բարձր՝ ունէր երեք դրունս զոր միովքն որ յետուստ նորա էին, եւ պարզ ինչ եւ հաստատուն պատ եւ սակաւ ինչ մեքենայս։ — Իսկզբանն ի միջեանն պուէտքն զգլխաւոր գործոն կատարէին ի խաղու անդ. իսկ պարաւորքն էին յաղագս քաղաքացեաց որ օգնական լինէին պուէտին. զառաջինն կայր պարն ի 50 արանց, յետոյ ի 15 արանց որ զուամարէին զպարապետէն[2]. իսկ որ գլխաւոր տայր կատարել՝ էր մեծատուն ոք ի մեծատանց, որ դիմակօք ծախուք կամէր սիրելի ժողովրդեանն լինել եւ առնել հանդէսս անձին իւրում. չէր իշխանութիւն կանանց խաղալ ի միասին, նա ուստիկ բազում ժամանակս եւ ոչ տեսանելն իսկ հանճարձակ էր նոցա։

Բ. Կատակերգական[3] բանաստեղծութիւն։ Ընդէն ի ժամանակի զի ողբերգութիւնն յեղծումն եկն, հակառակն նորա՝ կատակերգութիւն ծաղկեալ եկն ի պայծառութիւն ի ձեռն Արիստոփանեայ։ Կատակերգութիւն առ սկիզբն ի մէջ դորիացի ցեղիցն՝ յերգոց անտի գինւոյ եւ ի խաղուց ծաղու ի տօնսն Դիոնիսեայ։ Զաւակեկն էր այն գործ այպերգածացն (շինականաց Դորիացւոցն որք ի տօնի խաղմանց տայր անդր գունդագունդ շրջէին հարպատական կա-

1 Deus ex machina. 2 Χοραγός, Κορυφαῖος, Chorège, Coryphée. 3 Comique.

անոր. Փիւսաւկոս աշակերտեալն ի Սիկիլիա[1] խրատելով գործացանել զմիտս Աթենացւոցն ի ցնորական խորհրդոց մեծամեծ ինչ իւրս գործելոյ, ծաղր առնելով զանչափ եւ զբարձրական մտածութիւնս նոցա՝ ընկերհաշութեամբ իւրք Թռչնոց[2] զոր ասէ ոմանք աթենացիք անհանգարտք իցեն յօրինեալ ի վերայ օդոց ։ — «Լիւսիստրատայն» յայս առնէ զքանդիչութիւն հասարակաց խաղաղութեան. յամենայն խոկ Ելլադա ժողովին կանայք փոյթ արարեալ հասարակաց իրաց, գրաւեն զմիջնաբերդն, պահանջեն իրաւունս ի ծերակուտէն եւ պնդեալք յամառեալք ի միաբանութեան իւրեանց ընդդէմ արանց, ապա ուրեմն բանադատութեամբ վճիռ լինի խաղաղութեան ։ — «Թեսմոփորիազուսքն»[3] է հակառակ Եւրիպիդեայ որ համարեալ էր ատեցող կանանց, եւ յայն սակս դատապարտեցին զնա ի մահ այն կանայք վասն յաճախելոյ նորա նոցա թշնամանս ։ Բայց ընդ քողով պատանելոյ զԵւրիպիդէս եւ զԱգաթոն՝ ի մէջ բերէ Արիստոփանէս եւ զերդուածս եւ զապականութիւն բարուց ազգին կանանց յԱթէնս ։ — Ի «Գործսն» (405) յանձին Եւրիպիդեայ յանդիման կացուցանի մոլար շաւիղ բանագործական բանաստեղծութեան համեմատութեամբ հնոյն, եւ միանգամայն ծաղր առնի ջանն՝ առնելոյ խառնաղանձ ամբոխին զիշխանութիւն ի ձեռս ։ — «Եկկղեսիազուսքն» (ժողով խորհրդեան կանանց), յորում կանայք զգեցեալ առնացի՝ առնեն ժողով ժողովրդեան եւ տան անդէն վճիռ՝ առնուլ զառաջնորդութիւն հասարակաց գործոց ի ձեռն, է հենգնութիւն անզօր եւ ապաժամեան ազգաց ռամկապետութեանն նորոգելոյ, եւ միանգամայն՝ ծիծաղել զաւհմանագրութեամբ ուէրութեանն Պղատոնի յորում ինչք եւ կանայք լինելոց էին հասարակաց ։ — «Պղուտոս» (ընչաւէտութիւն, 388) վերջին հատուած Արիստոփանեայ կշտամբէ զԱթենացիսն վասն ագահութեանն նոցա եւ բարեկեցութեան եւ սիրելոյ զքեղն, եւ կացուցանէ նոցա օրինակ առաջի զհին պարզութիւնն եւ զխարուցն զգաստութիւն ։

2. Միջին կատակերգութիւն եղ եկաց՝ յորժամ յետ դադարելոյ անարգել իշխանութեան ռամկապետութեանն՝ 30 բռնաւորքն արգելին զհամարձակ կշտամբանս կատակերգուացն, եւ լինէր այն առանց պարաւորաց՝ այնու զի ոչ ոք առնոյր այնուհետեւ յանձն տալ զծախսն ։ Բաւական համարէին յայնժամ հեռաէ կատակերգուքն զթերութիւնս դասու իրիք մարդկան միայն կամ զանցելոց ինչ ժամանակաց իրս եւ կամ զմատենագիրս ընդ հենգն արկեալ ձաղել ։ Չեւս ողորկ էր եւ ընտիր, այլ բանակցութիւնն երկայնաձիգ իմն էր եւ բազում անգամ շատախօսութեամբ ։ Երեւելիք ի միջին կատակերգուաց են՝ Անտիփանէս Ռոդացի (380), յորմէ բազում հատակոտորս ունիմք, — Անաքսանդրիդէս, Աղեքսիս Թուրիացի, — Տիմոկղէս՝ ժամանակակից Դեմոսթենեայ ։

3. Նոր կատակերգութիւն ի ժամանակի միապետութեանն առ Աղեքսանդրիւ եւ նորին պայազատք ի մէջ դայր. քաղաքային հենգնութիւնք եւ թշնամանք ի բաց եղեն, եւ միայն առօրեայ կեանք հասարակաց՝ եւ հանապազորդեան դէպք ընտանեաց՝ որոց քաջ միտ դնէին պոետք ։ Առաւելութիւն կամ քաջութիւն նո-

1 Տես վերագոյն եր 402 ։ 2 Νεφελοκοκκυγία. 3 Տես վերագոյն եր 399 ։

րոյն կատակերգութեան էր՝ յօրինել քաջ նկարագիր վարուց եւ նշանակել զբարս մարդկան՝ յոր ոչ այնչափ ցնորք պիտոյ էին որչափ միտք ուշակալք եւ դիտողք։ Գրեանն դոյզն ինչ էր եւ առանց փոփոխութեան. համակ ի մէջ գան ի նորն կատակերգութեան՝ որոշեալ ինչ բարք, ծառայք խորամանկք եւ նենգաւորք, որդիք ստահակք, զինուորք պարծուկք եւ այլ եւս նոյնպիսիք։ Ընդ այսպիսի միակերպն նիւթոյ՝ էր եւ լեզու ռամիկ, ցուրտ բարբառ, եւ միօրինակ իմն եւ անկանոն չափ երգոց։ — Երեւելի քան զամենեսին գտաւ Մենանդրոս Աթենացի (342—290), մեծատուն առակօք եւ կանոնօք կենաց. սա է պատկեր եւ տիպ Տերենտեայ կատակերգուի հռոմայեցւոյ, որպէս երիցագոյն ժամանակակիցն նորա Փիղեմոն՝ եղեւ օրինակ Պղաւտեայ։ — Զ Դիփիղոսէ Սինոպացւոյ պատմի յօրինեալ 100 բանաստեղծութիւնս՝ յորոց սակաւ ինչ հատակոտորս եւեթ ունիմք։

## 280

### Գեղեցիկ արուեստք։

Որպէս առ Արեւելեայց՝ նոյնպէս եւ առ Յունաց ի սկզբանն ուրեմն արուեստն սպասաւոր կրօնիցն էր. եւ յայտնի իսկ երեւի թէ եգիպտական արուեստն գործեալ իցէ ազդեցութիւն մեծ ի վերայ յունական արուեստի միջնորդաւ աշխարհին Կրետացւոց, Ռոդացւոց, Սամիացւոց՝ որ էին հին կայանք Յունացն անդրիանտագործութեան։ Ազատութիւն էր առ Յունաց զճարտարաւ ոմանք ժողովել յուսումն արուեստի, եւ այնպէս կազմել դպրոց ինչ՝ որով առաքէն շահեալ տիրէր պայման եւ ոճ արուեստի ճարտարին այնորիկ։ Բուն առաջին հին անդրիք ի փայտէ էին՝ զորովք յետոյ սկսան պատել ոսկի կամ փղոսկր, եւ կամ նկարէին իսկ։ Սակաւիկ ինչ յետոյ՝ եւ արուեստ ձուլելոյ ի պղինձ, եւ յետ այնորիկ՝ քանդակել ի մարմարիոնի։ — Նախ իսկ երեք գլխաւոր ժամանակք են արուեստիցն Յունաց։ — 1. Ժամանակն որ յառաջ քան զՊարսից պատերազմունսն է, յորում տիրէր ոճն Եգինական կամ հնոյն՝ որպէս ցայժմ ասացաւ, յորում նշանաւոր կացին մօտ ի ժամանակս պատերազմացն Պարսից՝ երեքին գլխաւորքն դպրոցաց, Կանաքոս՝ ի Սիկիոնի, Ագեղադաս՝ յԱրգոս, Օնատաս՝ յԵգինա. յեգինական դպրոցէ ասոր են Եգինական պատկերքն ի մայրաքաղաքին Բաւիերացւոց։ — 2. Պերիկղեան ժամանակն մինչեւ ցկատարած պեղոպոնեսական պատերազմին, յորում տիրէր ոճն բարձրական, ի ձեռն Փիդիասայ Աթենացւոյ (430), Պողիւկղետեայ Արգիացւոյ (420) եւ Միւրոնայ Ելեւկեցւոյ (430)։ — 3. Ժամանակն որ է յետ բարձման ազատութեանն Յունաց, նա եւ յետ մահուն իսկ Աղեքսանդրի, յորում

տակաւին փթթէր ամէն գեղեցիկն՝ իբրեւ զծաղիկ տժգունելոյ ի ձեռն Գրադարանեաց Աթենացւոց, Ատտալեայ Պերգամացւոց եւ Պտղո-մեայ Ալեքսանդրացւոց (330)։ — Այսպէս եւ յետ սոցա առ պայազատքն Աղեքսանդրի թուի թէ անդրիանտագործութիւնն եղեւ երկայնակեաց քան զնմանագրութիւնն. բայց այս ինչ խոտոր ի միջի էր՝ զի յօղէին եւեթ զգործս առաջնոց ճարտարացն եւ ոչ եթէ նոր ինչ գիւտ ի մէջ բերէին. Թէպէտ եւ արուեստական աճողութիւնն չէր տակաւին կորուսեալ ի միջոյ եւ հաստատէր իսկ առաջնոցն, որպէս ի գործոց անտի որ ցայժմ կան՝ եւ մեծ մասն նոցա ի ժամանակաց աստի է, յայտ արարեալ ցուցանի։

Հարկ գեղեցիկն արուեստից՝ որ են ճարտարապետութիւն, անդրիանտագործութիւն եւ նկարչութիւն, հիմնեալ իմն էր ընդ կենաց ժողովրդեանն Յունաց։ — Ի ճարտարապետութեան Յունաց շողայ համեմատութիւն չափուց եւ միաբանութիւն ամենայն մասանց, այնպէս զի իւրաքանչիւր շինուած կազմեալ յօրինէր գեղեցիկ ինչ բոլոր։ Գլխաւոր մասն կազմիչ Յունացն շինուածոց՝ են սիւնք, որոց երեք իմն ազգք են ըստ ընտրութեան խոյակացն, հզօրն եւ անպաճոյճ դորիացին, նուրբ յոնիացին՝ զանգրաւորն սրսաւեղագիւոք, եւ մեծաշուք բազմազարդ կորնթացին։ Ասունքն արկանէին մանաւանդ ի կիր ի մուտս մեհենիցն եւ ի սրահս եւ ի ճեմելիս։ Այնու զի ուրեք բնակութեան հնացն փոքր եւ անշուք իմն էին՝ զճարտարութիւն շինողութեանն Յոյնք ի վերայ հասարակաց շինուածոց եւեթ կարող էին ցուցանել։ Այսպիսի շինուածք էին՝ Մեհեանքն (մեհեանն Աթենայ՝ Պարթենոն անուն յԱթէնս, մեհեանն Արտեմիդայ յՈղոմպիա եւ յԱգրիգենտոն, մեհեանն Հերայ յԱրգոս, մեհեանն Ապողոնեայ ի Փիգաղեա յԱրկադացւոց աշխարհին, մեհեանն Դեմետրեայ յԷղեւսիս եւ այլ եւս մեհեանք), թատրոնքն եւ շիրիմք՝ յորս հռչակաւոր եւ նշանաւոր է շիրիմն Մաւսողեայ[1] արքայի Կարիացւոց յԱղիկառնասոս, եւ այլ եւս նոյնպիսիք։ — Ի քանդակագործութեան կամ յանդրիանտագործութեան՝ ամենեւին ի գլուխ իսկ բարձրութեան երթեալ հասին Յոյնք, մինչ զի մնացորդք գործոց նոցա զոր ունիմք, կան մնան տակաւին իբրեւ չհասանելի օրինակք գեղեցկութեան։ Ի սոյն նպաստ լինէր նոցա մանաւանդ այն՝ զի ձեւք եւ կերպարանք անդամոց նոցա չէին փափկեալ նրբաձեւ եւ անհեղեղ արկանելեօք, եւ զի տեսանէին հանապազ ի հրահանգս անդ բռնամարտիկս կռուոց զմերկանդամեան յայլ եւ այլ ձեւս եւ ի շարժմունս։ — Ի հռչակաւոր անդրիանտագործացն՝ Փիդիաս յօրինեաց զպատկեր Աթենայ, զգեղեցիկն քան զամենայն զարդս քաղաքին Աթենացւոց, եւ զանդրին Արամազդայ յՈղոմպիա՝ յորոյ դէմս երեսացն նստի, ասեն հինքն, երեւոյթ իմն "ամենազօր գօ-

1 Mausolée.

րութեան եւ ազգամոլութեան, մինչեւ դարձուցանել ազգոյն ի մոռացօնս զվիշտս այսց կենաց»։ Եւ չուսա իսկ համարէր որոյ չէր տեսեալ զայն անդրի՝ յառաջ քան զմախճան իւր. Պոլիւկղէտոս նորին աշակերտ անուանի՝ յաղթ պատկերաւն Հերայ յԱրգոս, եւ անդրեաւ առն նիզակաւորի. Միւրոն՝ հաչակեալ պատկերաւն Հերակղի եւ կովուն պղնձեայ որ զօրթ իւր դիեցուցանիցէ եւ անդրեաւ առն որ ձգիցէ սկաւառակ, — Պրաքսիտեղէս եւ Սկոպաս՝ նշանաւորք՝ պատկերօք Դիոնեսեայ եւ Աստղկան. Սկոպասայ էր եւ Ապողոնն Քնարահար եւ կոյտ ծովային աստուածոցն՝ որք զԱքիլլէս ածեն ի Լեւկա կղզի. Իսկ Լիւսիպպոս ճշդագոյն քան զամենայն ի գիտութեան կերպարանաց մարմնոյ՝ յօրինեաց զմեծայաղթ անդրին Արամազդայ ի Տարենտոն, զմեծապերճ զհսկայագոյն Հերակղէս ի Կորընթոս, զկառս արեգական լծեալս ի չորից, որոց մանաւանդ երիվարքն էին համբաւաւոր, բայց առաւել քան զամենայն՝ անդրիքն Աղեքսանդրի։

Ի նկարչութեան պայծառանայր Պողիգնոտոս Թասիացի (առ Պերիկղեաւ) որ նկարեաց յիւրաց պատերազմացն Պարսից զպարահն[1] (որ Նկարէնն[2] անուանէր), Զեւքսիս Հերակղէացի ի մեծն Յունաստանի, Պառասիոս Եփեսացի (400), եւ առաւել քան զամենեսին Ապեղղէս Կողոփոնացի՝ որ ըստ Պլինիոսեայ սիրելի եղեն Աղեքսանդրի։ Հինքն մեծաւ զարմանալեօք յիշեն ի գործոց նորա զպատկերն Աղեքսանդրի՝ շանթ ի ձեռին, որպէս եւ զպատկերէ Աստղկանն որ ի ծովէ ելանիցէ (Անադիոմենէ), կամ զԱրտեմեայ ի մէջ կուսանաց՝ յարժամ զոհոն մատուցանիցեն։

Նշխարք եւ հոյակապք յանդրեաց որ ցայժմ կայցեն (որոց ոչ ժամանակն ինչ յայտ է եւ ոչ նա որ յօրինեացն), են յաջորդքս՝ — 1. Անդրիք եւ քանդակք Պարթենոնի (մեհենի դիցն Աթենայ) զորս յառաջ քան զ35 ամս ետ առնուլ Լորտ Էլճին եւ բերել ի բրիտանեան Մուսէոնն (Էլճինեան մարմարինք)։ — 2. Ապողոնն Պելուետերայ։ — 3. Կոյտ անդրեացն Լաոկոնայ։ — 4. Սուսերամարտիկն օրհասական (երեքին եւս ի Հռոմ են)։ — 5. Մեդիկեան Աստղիկն (ի Փլորենտիա), Բորկեզեան մարտիկն (ի Գաղղիա)։ — 6. Կոյտն անդրեաց՝ անուանեալ Փառնեզեան ցուլ (ի Նէապոլիս), եւ այլ եւս նոյնպիսիք։

Ի նկարուց կամ ի պատկերաց Յունաց չունիմք ինչ ամենեւին, բայց միայն յառաստաղական կամ պատմական նկարուց ինչ որ ի վերայ բրտեղէն անօթոցն Յունաց գտանիցին, եւ կամ ի վերայ աւերակաց հնոց ինչ շինուածոց (ի բաղանիսն Տիտոսի ի Հռոմ եւ մանաւանդ ի ճամուկս որմոցն գտեալ ի Պոմպէի քաղաքի կործանելոյ տասանմամբ. — Ալտոբրանտինեան հարսանիք)։

1 Στοά. 2 Ποικίλη.

# 281

## Պատմագրութիւն եւ ճարտարխօսութիւն։

Պատմագրութիւնն եւս ի յոնիական գաղթականութեանց անտի ի Փոքրն Ասիա՝ առ ակիզբն։ Այլ յառաջնումն՝ զգրոյցս եւեթ զառհմնագին ինչ գիտաց եւ զհաստատութեան իւրաքանչիւր քաղաքաց անպաճոյճ եւ առասպելական հարկանէին ի մատենի Բանագիրքն կամ Զրուցագիրք[1] (550—400). յորոց եւ հոյակապք կացին երեքին Միլետացիքն՝ Դիոնիսիոս, Կադմոս եւ Հեկատէոս (յամի իբրեւ 500)՝ զորոյ այժմ զհատակոտորսն ունիմք, որպէս եւ զբազմաց զայլոց եւս բանագրացն (որպիսիք՝ Փերեկիդէս Լերոսացի, Ակուսիղաւոս Արգիացի, Հեղղանիկոս Միտիլենացի, Քարոն Լամփսակացի, Քսանթոս Լիւդացի)[2]։

1. Առաջին որ փոխանակ բանագրութեանն եդ զճշմարիտ պատմագրութիւնն եւ Հայր պատմութեան անուանեցաւ՝ է Հերոդոտոս յԱղիկառնասոս քաղաքէ Դորիացւոց (ծն. 484)։ Յետ կորնչելոյ ազատութեան քաղաքին իւրոյ՝ եկաց նա ժամանակս ինչ ի Սամոս, եւ ապա առնէր ճանապարհս յԵգիպտոս, յԱսիա, ի կողմանս Դանուբայ եւ ի Յունաց աշխարհ, յորս իւրովի իսկ աչօք եւ ի բանից բերանոյ գումարեաց նիւթ ի պատմութիւնն իւր՝ զոր գրեաց նա յ9 գիրս անուանեալս ըստ անուանց 9 Մուսայիցն (ի 44 ամի հասակին). իսկ ի ծերութեանն եկաց նա ի քաղաքին Թուրիացւոց յաշխարհի անդ Իտալիացւոց յոր երթեալ էր նա ընդ գաղթականութեան իմիք։ Գրեաց նա ի մատենի անդ յոնիական բարբառով (որ յայնժամ սովորական իմն էր վասն պատմութեան)՝ զմարտս պատերազմացն Յունաց ընդ Պարսից, սակայն ըստ պատեհի իմն խառնեաց ի նոյն եւ զհնագոյն անցս արեւելեան եւ յունական ազգաց։ Որչափ յաճախեցին պատմական քննութիւնք նորոց ժամանակաց վասն ծանօթութեան հին ազգաց, եւ որչափ եղեն խորամուխ յիրսն՝ նոյնչափ աճեցին մեծարոյ կարծիքն զՀերոդոտայ եւ ակնածութիւն։ Վախճան ի մտի է նորա՝ ի գիրս անդ որ ամենեւին իսկ պարզութեամբ եւ հաւատարիմ սրտիւ վասն ժողովրդեանն գրեալ է՝ ցուցանել թէ որպէս սէր հայրենեաց եւ ազատութեան, կարգաւորութիւն, պայծառութիւն մտաց եւ սակաւապիտութիւն Յունաց յաղթեաց անազատ մտաց, բիրտ ամբոխի եւ դատարկ շքեղութեանն Արեւելից։

2. Մնացեալ պատմութեանն Հերոդոտայ (յընթեռնուլ նորա առաջի բազմութեան յՈղոմպիական մրցանսն) վառեալ բորբոքեցին ի նախանձաւորութիւն եւ ի նմանութիւն զհայրենասէրն Թուկիդիդէս Աթենացի (470—402) ի զաւակէ տոհմի իրիք իշխանացն Թրակացւոց։ Սա ի ժամանակի պատերազմի իրիք Ամ-

1 Logographes.

2 Հատուածք ի Լէյփցիկ 1824։ Քրայցէրի կամ Միւլէրի՝ Հատուածոյ հնագոյն պատմագրաց Փարիզ. 1840։

փիլիպոսեայ (այնու՝ զի համարեցան թէ վասն անագան հասանելոյ նորա առաւ քաղաքն ի Սպարտացւոց)՝ աքսորեցաւ եւ յաքսորանս անդ գրեաց «զՊատմութիւն Պեղոպոնեսական պատերազմին»։ Բա- ղում ինչ իրօք օտար կերպարանս ունի սա քան զՀերոդոտոս։ Եւ Հերոդոտոսի ի մէջ գան պանծութեան միոյ Յունաց վասն յաղթութեանցն, առ Թուկիդիդեայ՝ բարձրագոյն կրթութիւն եւ հրահանգք Աթենացւոց առ Պեղոպոնեսական կռուովն. եւ զոր օրինակ նա եւ զքանաստեղծական ինչ եւ զպարզական դիւ- րահաս լեզուն ժողովրդեանն բարբառի եւ զցնորս ընթեռնլեացն գրգռէ, նոյնպէս սա՝ իւրովն բարբառով որ թափ ինչ անցանէ եւ է ծանրաբեռնի իմաստիւք, եւ ծանրաշարժ թախանձեցուցիչ ոճովն ընդ կիրթ մասին ազգին խօսի եւ զքաղեցուցեալ պարապեցու- ցանէ մանաւանդ զխորհող միտս եւ զդիտող հանճար։ Ի յօրի- նելն զնկարագիր արանցն որ ի հանդիսի անցանիցեն՝ ամենեւին խոր ինչ տեղեկութիւն մարդկեղէն բարոյիցն բնութեան ցուցանէ, եւ յառեննախօսութիւնս անդ՝ զորս ուրեք ուրեք ի ներքս մուծանէ՝ որք եւ բազում ուրեք դժուարիմաց են վասն ազգի ազգի նուրբ հայեցմանցն՝ ճշդիւ ինչ եւ գաւակաւ նկարէ զխորհուրդ, զձիգն, զկամս եւ զպատճառս գործոց՝ զառանձինն ուրուք կամ զկողման իրիք կամ զռէքրութեան։ Կատարի պատմութիւն Թուկիդիդեայ ի 21երորդ ամի Պեղոպոնեսական պատերազմին. եւ է այն պատկեր եւ օրինակ նմանութեան՝ վասն պատմագրի որ կամիցի գրել պատ- ճառաւոնդիրն օրինակաւ՝ հանդերձ արդեանց դիպօք եւ անաչա- ռութեամբ։

3. Քսենոփոն (446—356) որ զկարգ պատմութեանն նորա մատոյց յառաջ մեծանուն եւ հռչակաւոր է լուսաւորութեամբ, փափկութեամբ եւ գեղեցկութեամբ ոճոյ՝ սակայն խորութեամբ մտածութեանց եւ պատմական հաւատարմութեամբ ի վայր քան զԹուկիդիդէս է։ Թէպէտ եւ ինքն աթենացի է, սակայն միշտ յարգիչ եւ գովիչ Սպարտացւոց՝ մանաւանդ Թագաւորին նոցա Ագեսիղայ՝ զորոյ եւ զվարսն եւս հարեալ է ի մատենի։ Յայն սակս «Յունական պատմութիւնքն» նորա յայտնի իսկ ակնառութեամբ գրեալ են, եւ մանաւանդ զմեծ որեարն Թեբայեցւոց՝ զՊեղոպիդաս եւ զԷպամինոնդաս ձախող ինչ նկարէ։ Պատմութիւն նորա կա- տարի պատերազմաւն Մանտինեայ (362)։ Գրեաց Քսենոփոն զՀրահանգս կամ զկրթութիւն Կիւրոսի[1] իբրեւ քաղաքային ինչ փի- լիսոփայական վիպասանութիւն, յորում յանդիման կացուցանէ զԿիւրոս իբրեւ կատարեալ օրինակ առն Թագաւորի, եւ զա- ռաւելութիւն եւ զշահ միահեծան ինչ իշխանութեան իմաստու- թեամբ առաջնորդելոյ՝ վասն դնելոյ համեմատ խռովայոյզ ընկեր- հաշտութեանցն սահմանադրութեան իւրոցն ժամանակաց։

1 Κυροῦ παιδεία.

Սոփրոնն Իսաղեա գործել կատարելագոյն զարուեստ իւր։ Ի բազում հարիւրաւորաց ճառից նորա զոր յօրինէր գնոց յԱթէնս՝ 32 եւեթ ճառս այժմ ունիմք։ Ի սմանէ առին սկիզբն ճառք ամենաժողովոյ տօնից[1], եւ նովաւ սկսաւ արուեստագործ ճարտարութիւն ի ճարտարախօսութեան։

1. Իսոկրատէս Աթենացի (436—338) է գլուխ այսր արդիւթեան ոճոյ, լրութեան կազմածոյ շրջանաց[2] եւ քաղցրաձայնն բարբառոյ։ Ի 21 ճառիցն նորա երեւելի քան զամենայն է ճառն ամենաժողով տօնի՝ յորում յորդորէ զԱթենացիսն ի միաբանութիւն ընդ միմեանս եւ ի մարտ պատերազմի ընդ Պարսից, զորմէ ասեն թէ ի 10 ամս յօրինեաց. եւ է խակ այն գործ ճարտարագործ վասն ոճոյն։ Իսոկրատէս (որպէս եւ Իսէոս աշակերտ Լիւսիայ եւ Իսոկրատայ) կարգեաց հրապարակաւ դպրոցս ճարտարախօսութեան կրթել աշակերտս վասն ատենից եւ ամենայն քաղաքային իրաց։ — Յետ պատերազմին Քերոնիայ առ վշտի կորստեան ազատութեանն Յունաց՝ եհար զանձն սովամահ 98ամենի։

2. Դեմոսթենէս (ծն. 385) որ աշակերտեալ էր Իսոկրատայ, Իսեայ եւ Պղատոնի, համարի իմն իբրեւ ի ծայր արուեստին հասեալ։ Ի մանկութենէ ընդ խափանչաց բնութեանն մեծաւ ճգամբք կռուէր վասն զլեզուն եւ զշարժմունս ի պատշաճ կրթութիւն ածելոյ։ Զարմանալի էր բեւեռել նորա յինքն զլսողսն եւ բորբոքել. կենդանութիւնն ի խօսելն, փոփոխ յաջորդել բանից ծանունց եւ բանից ծաղու, խօսք դառնիկք եւ սուր իմն դարձուած։ Նշանաւոր են քաղաքային ճառք նորա, մանաւանդ 12 ճառքն ընդդէմ Փիլիպպեայ արքայի Մակեդոնացւոց[3], յորոց չորք անուանեալ կոչին Ողիւնթեանք, զի առձօք յորդորէր զԱթենացիսն պաշտպանել քաղաքացն որ կրէին յարձակումն ի Թագաւորէ անտի, մանաւանդ Ողիւնթացւոցն։

3. Այլ՝ ուր Դեմոսթենէս հայրենասիրաց կողմանն հանդիսացեալ էր, Եսքինէսն միւս եւս ճարտարախօս ոչ ինչ ընդհատ ի Դեմոսթենեայ՝ էր ի կողմն Փիլիպպեայ՝ լեալ կաշառակեր ի նմանէ։ Վասն այնորիկ իսկ՝ յորժամ վճիռ ետ քաղաքն Աթենացւոց տալ Դեմոսթենեայ պսակ ոսկի՝ քանզի նա էր որ ճարտարախօսութեամբ ածեալ էր ի հաւան առաքել թիկունս օգնականութեան ի Բիւզանդիոն, եւ այնպէս ապրեցուցեալ էր զքաղաքն ի պաշարմանէն Փիլիպպեայ, կամէր Եսքինէս չքել ճառիւք ի բաց դարձուցանել զվճիռն՝ ցուցեալ թէ չէր Դեմոսթենեայ վճարեալ ինչ։ Սա խօսեցաւ Դեմոսթենէս զանհամեմատ ճառն՝ անձինն պաշտպանութեան "զՎասն պսակին„[4], որով այնչափ իսկ եղ զհակառակորդն հասոյց՝ զի արկաւ նա ի պարտիս, եւ առ չժուժալ ամօթոյն եղ գնաց հատուած ի Ռոդոս, ուր կարգեաց դպրոց ճար-

1 Πανηγυρικός. 2 Périodes. 3 Philippiques. 4 Περὶ τοῦ στεφάνου

տարխօսութեան († 317)։ Յերիս ճառս անդ զոր ունիմք ի ճառից Եսքինեայ՝ երեւի ճարտարութիւն մեծ յօրինելոյ նկարագիր բարուց եւ կրից ոգւոյ։

Լիկուրգոս Աթենացի (Ծն. 408) աշակերտ Իսոկրատայ եւ Հիպերիդէս († 322) էին գործակիցք Դեմոսթենեայ ընդդէմ Մակեդոնացւոց, եւ վերջինք ի 10 ատտիկեցի ճարտարախօսաց՝ զորոց զճառսն ժողովեալ են իմաստունք աղեքսանդրիական դպրոցին։

## 283

### Փիլիսոփայութիւն։

Փիլիսոփայութիւն Յունաց հնագոյնն կամ յառաջ քան զՍոկրատէս։ — Յորժամ զարթիցէ մարդկեղէն ճանաչումն՝ սկսանի ոգին ի վիճակէ անտի զգացմանցն եւ երեւեցուցմանց շփոթ իմն զմիմեամբք անկելոց՝ հանել ի վեր զանձն եւ յինքն իմն գալ. եւ այս իսկ "գիտակցութիւն" է սկիզբն փիլիսոփայելոյ, որով մարդն գայ ի խելամտութիւն՝ ոչ միայն ի վերայ իրաց եւ համեմատութեանց որ "արտաքոյ քան զինքն" իցէ, այլ եւ շարժմանց եւ վիճակի անդէն ի ներքս "յինքեան"։ Մարդկեղէն միտք ի զարթնուլ անդ իւրեանց այսպէս՝ նախ զառաջինն արտաքին երեւութիցն կարգի եղեւ մտադիր, եւ զմտաւորական զօրութիւնն իւր աշխատեցոյց ի խոյզ եւ ի քննութիւն "Բնութեան" (մարմնաւոր եւ շնչաւոր գոյացութեան)։ Այլ՝ ուր արեւելեանն ամենայն համօրէն մտածութեամբն ի Բնութիւն անդր մտեալ խորագոյն՝ անդէն մնաց ընկղմեալ եւ չկարաց ոգի նորա անջատել զանձն ի Բնութենէ անտի իբրեւ յիմեքէ որ դէմ ընդդէմ հակառակ ոգւոյն իցէ, նմին հակառակ՝ յոյնն շարժունն միտք՝ ամբարձ զանձն ի վերոյ քան զԲնութիւնն, եւ ջանայր ընդմտանել ի նա թափանցանց եւ խելամտեալ տիրել նմա։ Յայն սակս հնագոյն փիլիսոփայութիւնն Յունաց է "Փիլիսոփայութիւն Բնութեան", քանզի ի դիտելոյ անտի զԲնութիւնն առ նա սկիզբն. ամենայն ջան եւ ճիգն նորա այս է՝ ի "բազմաւորութեան" երեւութից աշխարհի "զմիութիւնն" գտանել, ի մշտնջենաւորն "փոփոխման՝ զմնայունն", "յերեւութի" անդ՝ "զէականն եւ զերական հիմն նոցա"։ Ի լուծումն խնդրոյն այնորիկ ընդ երկուս իմն շաւիղս ընթանային. մին էր "Փիւսկեան" մտածութիւն Յոնիական փիլիսոփայութեան՝ որ ըմբռնէր զաշխարհս ըստ զգայականն երեւութից եւ խնդրէր գտանել զբուն նախաւոր հիմն իրաց, եւ միւս՝ "Բարոյական" դորիացի պիւթագորական դպրոցն՝ որ որոնէր զներքին հիմունս կարգաւ յառաջադէմ գալոյ մասանց աշխարհի, եւ թէ որպէս կան օրէնք եւ դաշնակաւորութիւն ըստ բարոյական իմն սահմանաց բարւոյ եւ չարի ի հիմնարկութեան աշխարհի։ Երրորդ իմն ընթացք

էին փիլիսոփայական քննութեան Եղէական դպրոցին՝ որ եդ ի-բրեւ մերադոյն քան զամենայն սկիզբն՝ զանեղն "Գոյ կամ Գոյն" եւ "զմիութիւն". եւ "զԱստուած" եւ "զաշխարհ" ընդանեայ իբրեւ մի: — Որպէս երկուքն այնոքիկ՝ "զֆիզիականն" եւ "զբարոյ-ականն" երեսս փիլիսոփայութեանն յօրինեն, նոյնպէս եւ Եղէա-կանն՝ "զխորհականն"[1] երեսն:

## 284

1. Յոնիական դպրոցն զայն իմն ունէր ի մտի՝ զի զերեւոյթս որ ի բնութեան լինիցին՝ մեկնիցէ ի ձեռն զօրութեանց եւ սեպհա-կանութեանց նիւթոյն իւրոյ գլխաւորին: Նա այս երկու իմն օրինա-կաւ. մի՝ "Զօրութենականն"[2] պայմանաւ, այսինքն՝ ընդունելով "նիւթ ինչ նախաւոր" (կամ զօրութիւն ինչ նախաւոր)՝ յորմէ ի ձեռն "թանձրանալոյ" եւ "նօսրանալոյ" աշխարհս երեւու-թիւքն գոյացեալ տակաւ ի ձեւ եւ ի կերպարանս. այնպէս՝ զի որ ինչ ի բնութեան "եղանիցի"՝ այն ի փոփոխմանէ իմիքէ այնր նա-խաւորին նիւթոյ կամ զօրութեան մեկնիցի: Նա միւս եւս "Մեքե-նականն" պայման. յորում համարէին իմն թէ ամենայն իրք ի նախաւոր իմիք մասնանց նիւթի բովանդակեալ կային, եւ ի ձեռն "բաժանման" եւ "յօդման" յօրինիցին. այնպէս՝ զի չընդունէին թէ բուն "եղանիցին" իրք ինչ կամ լինիցի փոփոխումն սեպհա-կանութեանց, այլ զամենայն կամէին մեկնել ի փոփոխմանէ ար-տաքին համեմատութեանց ի միջոցի:

Ա. Փիլիսոփայք զօրութենականք: — Թաղէս Միլեսացի (630) անուանի իբրեւ քաղաքային առաջնորդ, աստեղագէտ եւ փիլիսոփայ՝ մի յեւթանցն փիլիսոփայից, համարի առաջնորդ յո-նիական դպրոցին՝ այսպիսի ինչ յառաջադրութեամբ թէ աշխարհս գոյ ի յարդ եւ ի զարդ ի թերակատար ինչ սերմնականն վճռակէ խառնուածական բնութեան կամ "ի ջրոյ": — Նոյն նորին քաղա-քակից Անաքսիմենէս (540) առաւել միտ եդեալ շնչաւորական գործունութեանն գտելոյ ի նախաւոր նիւթի անդ՝ իբրեւ հիմն եւ սկիզբն եդ "զօդն"՝ որ երեւիցի ի փչման հողմոյ՝ իբրեւ ինքնաշարժ զօրութիւն, եւ ի տուրեւառ անդ շնչոյ՝ իբրեւ պատճառ կեն-դանութեան: Միաբանէ ընդ նմա եւ Դիոգենէս Ապողոնիացի (460) որ զօդս կազմիչ իմն ոգի դնէր: — Փերեկիդէս Սիւրացի (540) եդ մի՝ գործօն սկիզբն "զեթեր" եւ միւս՝ կրական սկիզբն "զհող". երկոքեին միաբանեալ եւ կապեալ ընդ միմեանս ի "ժա-մանակի" յորում "Ամենայնն" կամ "Ընաւ"[3] (տիեզերք) յօրի-նեալ կազմի: — Հերակլիտոս Եփեսացի (500) այր ազնուական եւ ի կողմն ազնուապետութեան եւ սեւամաղձական խառնուածով,

1 Logique. 2 Dynamique. 3 Τὸ πᾶν.

չինն յամի 406 հարկեցան Պատրիկքն տալ ռամկացն վարձս կարգեալս եւ սահմանեալս, այս թէ ոչ՝ չէր մարթ ի գլուխ ելանել մեծամեծ գործոց պատերազմի զոր ի գլուխ հանին Հռովմայեցիք։ Իսկ յայնմ հետէ կարգեալ յարգարեցին կարգս եւ օրէնք զինուորութեանն Հռովմայեցւոց [1]։

Մինչ դեռ քաղաքացիքն անդէն ի ներքս յաղթահարին իրեանց հասարակէին եւ ամբոխացուցանէին զազատութիւն իւրեանց, եւ արտաքուստ եւս ընդարձակեալ մեծացուցանէին զսահմանս իրեանց, բազում անգամ Սաբինացւոց, Հեռնիկացւոց, Վոլսկացւոց եւ Էկուացւոց յաղթեալ՝ եւս Հռովմ հզօրագոյն քան զամենայն տէրութիւնս Լատինացւոց աշխարհին՝ 100 ամօք յետոյ քան զմերժումն Թագաւորացն։ Իսկ զամենայն սատիկ եւ յերկարագոյն պատերազմ էր նոցա ընդ Վէյեացւոց քաղաքին. կարգեալ եւ սահմանեալ իմն էր պաշարումն քաղաքին եւ ձմերայնի եւս տեւէր վրանօք, սակայն եւ այնպէս տեւէր ամ տասն (404—395)։ Այլ ուրեմն առ զնա յարձակմամբ եւ գործելով գետնափոր Մարկոս Փուրիոս Կամիլլոս զինուոր, եւ եմուտ ձիանօք չորիւք սպիտակօք ի Հռովմ։

Թէպէտ եւ կամէին այնուհետեւ բազումք ի Հռովմայեցւոց երթեալ բնակել ի քաղաքին Վէյեացւոց, բայց Կամիլլոս չառ յանձն զի մի բաժանումն այն վնասակար ինչ տէրութեանն լինիցի. այլ վասն նորին իսկ առնելն եղեւ հարստապետաց ժողովրդեանն, ամբաստան եղեն զնմանէ որպէս թէ խորեաց նա յաւարէն, եւ նա մեկնեցաւ գնաց յԱրդէա տրտմեալ ընդ ապերախտութիւն քաղաքացւոց, եւ հարստապետքն եդին ի վերայ նորա տուգանս։ Ոչ յետ բազում ինչ ժամանակի հարկ հանդիպեցան Հռովմայեցիք կոչել զնա յետս։

## 340

Իսկ Սենոնեանն Գաղղիացիք՝ որ բնակեալ էին յայնկոյս լերանցն Ալպից ի հովիտսն Պադոս գետոյ՝ յառաջ քան զ150 ամ, դիմեցին յամի 390 յԻտալիա, հասին մինչեւ ցԿղուսիոն եւ անդ խնդրէին իւրեանց վայր բնակութեան։ Զահի հարեալ բնակչացն՝ զՀռովմայեցիս աղաչէին վասն Թիկանց օգնականութեան։ Հռովմայեցիք յորդորել սկսան զԳաղղիացիսն ի բաց կալ ի Թշնա-

1 Երկրորդին հետեւող իւրաքանչիւր տարւոյ տոմար էին ունել 4 լեգէոնս որոց կային հազարապետք 24։ Լեգէոնն՝ որ էր 3—6000 այր՝ յօրինեալ կայր ի Թեթեւվառելոց (velites), ի տիգաւորաց (hastati), ի յառաջնաւորաց (principes), եւ իւրաքանչիւր ի նոցանէ բաժանէր յ30 եւ 30 դասս։ Իւրաքանչիւր ի դասուց տասն գործեալ յ30 եւ 30 մասունս բաժանէր [manipulus, որ բովանդակէր 2 հարիւրապետութիւնս (centurias), որոց գլխաւորք էին 2 հարիւրապետք (centuriones), 2 գնդապետք (uragi), 2 դրօշակիրք (signiferi]։ Յետ ժամանակաց ինչ զի լեգէոն բաժանէին ի 10 վաշտս (cohortes), այնպէս զի մի վաշտ բովանդակեալ ունէր 3 հարիւրապետութիւնս (կամ 4 manipulos)։

մութեան գործոց, եւ իբրեւ ոչ ինչ կարացին վճարել հրեշտակք Հռոմայեցւոցն, անցին կացին առաջ ի դրունս դղեկին եւ ետուն քաջութեամբ պատերազմ ընդ Գաղղիացւոցն։ Վաղվաղակի առաքեցին հրեշտակութիւնս ի Հռոմ քաղաք, ցուցանել թէ հակառակ ազգացն իրաւանց գործեցին հրեշտակք Հռոմայեցւոցն, սակայն չեղեւ ինչ նոցա ընդ այնր հատուցումն ի Հռոմայեցւոցն։ Յայնժամ Բրեննոս զօրավար Գաղղիացւոցն յարձակեր ի վերայ Հռոմ քաղաքի, առ Ալլիա գետով անհնարին ի պարտութիւն մատնեցան Հռոմայեցիքն, անկան ի նոցանէ 40,000 այր եւ մնացեալքն փախստեալ ցրուեցան. մնան մի նոցա ի Կապիտողին անկեալ փախստեայ՝ մինչ զի յորժամ զհետ պնդեալ հասին Գաղղիացիքն յետ երից աւուրց՝ թափուր զքաղաքն գտանէին զոր եւ հուր հարեալ այրէին եւ կոտորէին զ80 ծերսն որք ի հրապարակի քաղաքին նստէին՝ կամեցեալ լինել զոհ քաղաքաթեան։ Ապա արգելեալ փակեցին զԿապիտողին ի մէջ եղեալ տառապել ի սովոյ զՀռոմայեցիսն (389)։

Յուշ եղեւ յայնժամ Հռոմայեցւոցն Կամիլլոս՝ որ եկեալ յԱրդէացւոց քաղաքէն կամէր անկանել ի վերայ թշնամեացն, եւ այրն աներկեւղ Պոնտիոս Կոմինիոս եդ զոգին ի բաքին եւ տարաւ առ նա զպատիւ Դիկտատորութեան։ — Թէպէտ յայնժամ Մանլիոս զերծոյց իսկ զԿապիտոլին ի յարձակմանէ Գաղղիացւոցն, քանզի զարթեալ սագա եւս ինչ յանհնարոյց ձայնսն՝ սկսան ճչանել ընդ այն գիշերոյն, եւ մինչ դեռ պահապանքն ի քուն կային՝ սագք նուիրականք Հերայ դիցն արարին աղաղակ մեծ, յորմէ զարթուցեալ Մանլիոսի եւ զօրականքն՝ հասեցին զնոսա զահավէժ ընդ զառ ի վայրն, սակայն յետուստ ուրեմն տագնապեալ ի սովոյն կամեցան տալ զինս 1000 լիտր ոսկւոյ, զի երթիցեն ի բաց Գաղղիացիքն։ Բայց մինչ դեռ Բրեննոսն ի կշռել ոսկւոյն՝ դնէր զսուսեր իւր ի նժար անդր զի ծանրասցի կշիռն՝ անդէն հասանէր Կամիղղոս զօրօքն եւ կանգնեալ յաղթութիւն մեծ ի վերայ Գաղիացւոցն՝ դարձուցանէր յետս զաւարն։ — Սակայն ընդ այս գործ յաղթութեան Հռոմայեցւոց յիրաւի է տարակուսել, եւ համարել զայն զիւտս պարծանաց միայն նոցա։

## 341

Յետ մեկնելոյ թշնամեացն ի բաց՝ այնչափ վհատեալ անկեալ էր ժողովուրդն, զի չկամէր այսուհետեւ շինել զքաղաքն այլ երթալ բնակել ի դատարկացեալ քաղաքն Վէիացւոց։ Մեծաւ աշխատութեամբ ուրեմն հաւանեցուցին Պատրիկքն մնալ անդէն. եւ զի մի միւսանգամ նմանապէս խորհուրդք ի մէջ դիցեն՝ հրամայն տուաւ ժողովրդեանն քակել առնուլ պատաղձ ի տանց քա-

ժամանակս ինչ իբրեւ սեպհական Պատրիկաց, մինչեւ յետսոյ ապա եւ զայն եւս կործանեն երկաթ ի մէջ ռամկին եւ եղեւ հասարակաց հաւասարութիւն երկոցունց եւս կարգաց՝ Պատրիկացն եւ Ռամկաց (302), եւ տէրութիւնն փոխեցաւ յազնուապետութենէ յռամկապետութիւն: Յայսմ հետէ առնու սկիզբն ժամանակին քաղաքային ազատութեան եւ պատերազմական քաջութեան Հռոմայեցւոց:

## 342

Յետ քաղաքացեացն միաբանութեան՝ որում կանգնեաց իսկ Կամիղղոս մեհեան սակաւիկ ինչ յառաջ քան զվախճանն իւր (365) եւ յետ աշխատանաց իւրոց զինուորութեան եւ սպառազինութեան ի ձեռն Կամիղղեայ՝ գրգռեցաւ մարտ պատերազմի ընդ հզօր լեռնորդեայ ազգին Սամնիացւոց, որոյ սկիզբն եղեւ յամէ 343 եւ ընդ ժամանակս ժամանակս ընդ մէջ հատեալ՝ ապա յետ 50 ամաց հարթեցաւ Հռոմայեցւոց ներքոյ ճանապարհ առաջի՝ նուաճել զամենայն համօրէն Իտալիա:

Պատերազմունքն այնոքիկ եղեն միանգամայն գեղեցիկ վարժոցք արուեստի պատերազմաց, եւ ժամանակ ծաղկեալ քան զամենայն ժամանակս՝ քաջութեան Հռոմայեցւոցն: Ի վճռականին եւ յանհնարին նեղութեան ժամանակի նուիրեալ զանձինս ի մահ անկանէին խումբ ի խումբ ի վերայ թշնամեացն եւ ինքեանք իսկ հիւպատոսքն՝ առ սէր հայրենի աշխարհին, եւ նախկին զրեթէ անյաղթական էին Հռոմայեցիքն լինէին: Պատճառք Սամնիական պատերազմին այն էր՝ զի գիրգ եւ բարեկեցիկ բնակիչք Կապուայ եւ դաշտավայրացն Կամպանիայ՝ չէին բաւական ունել զդէմ Սամնիացւոցն զհուրեանց տոհմակցաց, եւ անկան առ Հռոմայեցիսն զի օգնեսցեն սոքա նոցա: Զառաջինն չառին յանձն Հռոմայեցիք օգնական լինել նոցա ընդդէմ Սամնիացւոցն ընդ որոց դաշնաւորք իսկ էին. այլ իբրեւ Կամպանացիքն ամենեւին ետուն զանձինս ընդ պաշտպանութեամբ Հռոմայեցւոցն եւ յանձն առին զտէրութիւն իշխանութեան նոցա՝ խաղացին հասին Հռոմայեցիք հարին մեծաւ քաջութեամբ զՍամնիացիսն ի ճակատու անդ առ Կումեօք առ լեռնոտամբն Գաւրոսի (342), բայց յետ յերկարելոյ այդր առաջնոյ սամնիական պատերազմին երկուս եւս ամս՝ եղին օգտակար դաշինս խաղաղութեան ընդ Սամնիացւոցն, քանզի անստուստ Լատինացիք որ ցայժմ դաշնաւորք էին նոցա՝ յետս կացին (340):

Վասնզի չկամէին յայնմ հետէ Լատինացիք թէ զլուխ դաշնաւորութեանն կացցէ միշտ Հռոմ, կամէին ամենեւին հաւասարել եւ ձուլեալ խառնել ի մի հռոմէական եւ լատինական տէրութիւնն, եւ պահանջէին ունել մասն ի ծերակուտին, հիւ-

տանել ի հիւպատոսութիւն եւ յայլ ամենայն պաշտօնս։ Յերկոցունց կողմանց մեծաւ դառնութեամբ պատերազմունքն մղէին՝ մինչեւ լինէր զրաւ իւրացն յաղթութեամբն Հռովմայեցւոց ի ճակատուն առ Վեսուվաւ, յորում ասեն հիւպատն Դեկիոս Մուս նուիրեաց զանձն ի մահ. եւ յառաջ քան զճակատն զօրն Մանլիոս Տորկուատոս (որդի միւսոյ Մանլեայ) տայր սպանանել զեւրուրոյն որդի՝ յետ պատկերոյ զնա առաջի զօրուն, վասն զի ճակատ եւ հակառակ հրամանի եւ յաղթեաց յասպատակի ուրեք։ Այսպէս յերկիս ամս նուաճեցան ընդ հնազանդութեամբ Լատինացիք, քակեցաւ դաշնաւորութիւնն նոցա (337), մասն մի նոցա խառնեցաւ գաղթեաց ի սահմանս Հռովմայեցւոց։ Մասն մի քաղաքացն Լատինացւոց որ առնուին քաղութեամբն ընդդէմ դարձան (Արիկիա, Պեդոն, Լանուիոն եւ Նոմենտոն)՝ ընկալան լատինական իրաւունս, այս ինքն՝ եղեւ նոցա համարձակութիւն ունել իւրեանց առանձինն գործակալս կամ վերակացուս գործոց եւ զիրաւունս առն հռովմայեցւոյ՝ իւրք իւրք ամփոփմամբ, եւ ի գալն նոցա ի Հռովմ իշխանութիւն էր նոցա մտանել ի ժողովն. իսկ միւս եւս մասն քաղաքաց (որպէս քաղաքքն Կամպանիայ՝ Փորմիք, Կապուա, Կումիք, Սուեսսա եւ այլք) եղեն ինքնօրէն քաղաքք[1] առանձինն ներքին առաջնորդութեամբ՝ այլ առանց իրաւանց հռովմէական քաղաքացւոյ. համարձակ էր ազգաբնակել ի Հռովմ, սակայն զօրականն ժողովեալ ի քաղաքացն Լատինացւոց չմտանէր այնուհետեւ ի հռովմէական լեգէոնսն, այլ ի կարգս զօրու դաշնաւորացն։ Յինքնօրէն քաղաքսն յայնուհետեւ կայր Վերակացու[2] հռովմայեցի որ առաջնորդէր դատաստանաց ըստ հռովմէական իրաւանց։

Յետ սակաւ ինչ միոյ նոյնպիսի անցք անցանէին եւ ընդ Հեռնիկացիս, ընդ Ասկուացիս եւ ընդ Վոլսկացիս՝ որք անցին ի կարգ Դաշնաւորացն[3] Հռովմայեցւոց, թէպէտ եւ առանձինն քաղաքք ինչ նոցա այլ եւ այլ իմն իրաւունս ունէին։ Յռունկք նաւացն՝ զոր առին յաւարի յԱնտիոն քաղաքի Վոլսկացւոց՝ բերեալ եդան ի զարդ բեմին ատենախօսութեան[4] ի հռովմէական հրապարակին։

343

Ընդ յաջողութիւն Հռովմայեցւոց նախանձեցան Սամնիտացիք. վասն դժուարութեան իրիք սահմանաց եւ փոխելոյ զառաջին զհնաւրական գաղթականութիւնն ի Փրեգեղլէս քաղաք ի վերայ սահմանակողմանցն Սամնիտացւոց՝ գրգռեցաւ երկրորդ պատերազմ Սամնիտական (325), յոր միջամուխ էին եւ Կամպանացիք, Լուկանացիք եւ յունական քաղաքք Ստորին Իտալիոյ։ Թէպէտ եւ յառաջին ամս յաջողէին Հռովմայեցիք՝ սակայն յամի իբրեւ 321

1 Municipia. 2 Praefectus. 3 Socii. 4 Rostra.

պաշարեցաւ զօրն Հռոմայեցւոց հանդերձ Հիւպատոսօքն Վետու-րիաւ եւ Պոսթումիաւ ի կիրճսն Կաւդինոնի ի հնարագէտ զօրա-վարէն Սամնիտացւոցի Պոնտիոսէ․ յանձն առին պաշարեալքն տալ զզէնսն ի բաց, զի մի առհասարակ մեռանիցին, մատուցանել պատ-տանդս եւ մեծաւ թշնամանօք անցանել մի ըստ միոջէ ընդ լուծն։ Բայց ծերակոյտն Հռոմայեցւոց յայտ արար թէ անզօր են այն դաշ-նինք խաղաղութեանն որ ընդ Պոնտիոսի ի նեղութեան անդ ժա-մանակին եղան, եւ Հիւպատոսքն եւ ամենեքին որ երաշխաւորն լեալ էին դաշանցն այնոցիկ յանձն առին զի կապեալ կծկեալ տացին ի ձեռս Սամնիտացւոցն․ բայց եւ թշնամիքն նոցա ցուցին մեծանձ-նութիւն եւ թողին զնոսա ազատս։ Իսկ զօրավարք Հռոմայեցւոցն, որ յետ այնորիկ անցին ի գլուխ զօրուն՝ մանաւանդ Պապիրիոսն եւ Փաբիոսն Մ՚աքսիմոս ջանացին ամենայն զօրութեամբ ջնջել զթշնամիսն, մինչեւ յետ ամաց ինչ չկարացեալ միայն զդէմ ու-նել Սամնիտացիքն՝ յայլոց օգնականութիւն խնդրէին ազատութեան։

Այլ նախ եղեն նոցա ի թիկունս օգնականութեան Էտրուսկա-ցիքն որոց հոգ եւ կասկած ի մտի էր միշտ վասն մեծանալոյ տէրու-թեան Հռոմայեցւոցն․ բայց յետ երից ամաց ի ճակատու առ Պերուսիա ջնջէր Փաբիոս Մ՚աքսիմոս զընտիր ընտիր զօրսն նոցա։ Յետ նոցա միաբանեցին մանր մանր ցեղքն Սաբելլականք ընդ Սամնիտացւոցն, սակայն եւ ի նոցանէ կէսք նուաճեցան եւ կէսք առանձինն դաշանցք յայլոցն բաժանեցան։ Ընդ նոյն ժամանակս արք պատերազմողք Սամնիտացւոցն թողին զերկիր իւրեանց եւ խաղացին յՈւմբրիա զի ի-ցեն մօտ նորոգ դաշնաւորացն իւրեանց Ումբրիացւոց, Գաղղիացւոց եւ Էտրուսկացւոց։ Բայց ել ի դերեւ յոյս եւ ակնկալութիւն ամենեցուն սոցա ի ճակատամարտին որ առ Սենտինոնիւ եղեւ, յո-րում յաղթեցին Հռոմայեցիք՝ նուիրելով Դեկիոսի Մուսի կրտսերոյ զանձն ի մահ, ըստ նմանութեան հօրն իւրոյ (295)։ Այլ յետ սա-կաւ ինչ միոյ անկանէր մեծ զօրավարն Սամնիտացի՝ Պոնտիոս ի բանտ եւ սպանանէին զնա Հռոմայեցիք չարաչար։ Եւ իբրեւ միւսանգամ փորձ փորձէին Սամնիտացիք նուիրական զնդաւն իւրեանց՝ Կուրիոս Դենտատոս (որ առաւել կամէր իշխել ի վերայ ընչաւետաց քան խնդրելին լինել ընչաւէտ) յաղթէր նոցա միւսանգամ, եւ անկանէր ի ճակատուն ընտիր ընտիր երիտասարդացն Սամնիտացւոց։ Այնու-հետեւ բռնադատեցան յանձն առնուլ Սամնիտացիք եւ դաշնաւորքն նոցա Ումբրացիք, Էտրուսկացիք եւ Սենոնեան Գաղղիացիք՝ զգե-րագոյն իշխանութիւն Հռոմայեցւոց, եւ ծառայէին ի զօրու սոցա իբրեւ դաշնաւորք (290)։

344

Բայց առաւելն կայր Տարենտ մեծատուն ծովեզերեայ քաղաքն Տարենտացւոց, զաղթականութիւն Յունաց․ փափկակեաց բազմ-

Հաւանութեան իմն թուի թէ յայնմ հետէ դատանային Հռովմայեցիք ի վերնակողմանն Իտալիոյ տալ անդ պատերազմ, քանզի տակաւին անդէն չէին նուաճեալ Գաղղիացիքն, թէպէտ եւ բազում անգամ պատերազմաւ ի նոյն անկան (284—280), սակայն այլ իմն աւելագոյն երեւելի պատերազմ առաջի ընծայեցաւ նոցա, այս ինքն ընդ Կարքեդոնացւոց պատերազմն։ — Յայն սակս հարկ է նախ զիրս Կարքեդոնացւոցն եւ Սիկիլիացւոց տեսանել։

## 345

Դիդոյ կին Ակերայ Տիւրացւոց թագաւորի, որպէս պատմութիւնն ունի, փախուցեալ յերեսաց անօրինաց եղբօրն իւրոյ Պիգմաղիոնի որ սպան իսկ զայր նորա, եկն յԱփրիկէ առեալ ընդ իւր զգանձս եւ զհաւատարիմս, եւ մօտ ի տեղին ուր այժմ Տունիս կայ՝ շինեաց դաստակերտս զԲիւրսա (880), եւ սակաւ աճեցեալ շուրջանակի դաստակերտն եկաց Կարքեդոն որոյ երկու իմն նաւահանգիստք էին՝ մի վասն վաճառաշահ նաւաց եւ միւսն՝ վասն պատերազմիկ նաւացն, զոր եւ 440 յոնիացի սիւնք շուրջանակի զարդարէին։ Բնակիչք քաղաքին Պիւնացիք կամ Պունիացիք եւս կոչէին ի Հռովմայեցւոց։

Զանխուլ աճեաց եւ մեծացաւ քաղաքն վաճառականութեամբ եւ բռնութեամբ զորս հաստատէին ի Սպանիա, եւ եղեւ վաղվաղակի նշանաւոր. ընդարձակեաց զսահմանս իւր հնազանդեցեալ զբնակ ցեղս կողմանցն այնոցիկ իբրեւ հարկատուս, ստացեալ կարգեաց յիւր դաշնաւորութիւն զայլ փիւնիկեցի գաղթականութիւնսն որ կային ի հիւսիսային ծովեզերս Ափրիկեցւոց աշխարհին՝ զՈւտիկա, զՀիպպոյ, զԼեպտիս եւ զայլսն, եւ յետոյ ուրեմն տարածեցան սահմանք նորա ի տարաւանդէ անտի Կաղէ մինչեւ ցԿիւրենէ։ Կամէին այնուհետեւ զբռնել եւ զարեւմտեան կղզիսն, եւ առին իսկ ի բուռն զԲաղէարեանսն, զՍարդինիա եւ զԿորսիկա. իսկ զՍիկիլիա միով մասամբ եւեթ. առին նոքա եւ զԿանարեան կղզիսն եւ զՄադէիրա եւ կալան զմասն մի Սպանիացւոց աշխարհին։

Զայս ամենայն աշխարհակալութիւնս հանէին ի գլուխ (յամի 550—480) բազմամբոխ նաւատորմիղ նաւուք եւ հարուստ զօրք զոր վարձէին յազգաց մեծի իրիք մասին Եւրոպայ (ի Գաղղիացւոց, յԻբերիացւոց, ի Լիգուրիացւոց)։ — Մինչեւ յայնկոյս իսկ արձանացն Հերակլի նաւարկէին Կարքեդոնացիք, մինչեւ ցԿանաչ տարաւանդն եւ ցկղզին Բրիտանացւոց, եւ էին նոցա բովք բազումք եւ տուրեւառ վաճառաց եւ գաղթականք։

Իսկ օրինակ առաջնորդութեանն՝ յետ բառնալոյ զպատիւ թագաւորութեանն որ սակաւ ինչ ժամանակ միայն ձգեցաւ, ազնուա-

կանոց պետութիւն էր. ընտրէին ի մեծատուն տոհմից երկուս զօրավարս իբրեւ վերագոյնս իշխանութեամբ քան զամենեսին, որ Սուփետքն կոչէին. ատենն էր նոցա եւ ծերակոյտ մի, եւ ի ծերակուտէ անտի ընտրանաւ կայր ժողով մի ծերոց, ընդ իշխանութեամբ ժողովոյ ծերոցն կային զօրավարքն: Զիշխանն ընտրէր ժողովուրդն եւ էր կցորդ օրէնսդրութեանն: Յետոյ ընտրեցան կացին 100 արքն վասն առնլոյ զառաջս առաւել իշխանութեան ազնուականացն, բայց եւ նոքա եւս զեղծան:—Այս իսկ է պատկեր մեծազօր քաղաքին Կարքեդոնացւոց մինչեւ ցպատերազմունսն զոր ընդ Սիրակուսացւոց սկսան մղել (յամի իբրեւ 480):

# 346

Ի միջոյ բազմամբոխ Յունաց գաղթականութեանցն քաղաքաց որ ի Սիկիղիա էին՝ երեւելի եւ փառաւոր քան զամենեսին եղեն Սիրակուսաք քաղաք երկնաւահանգստեան հանգոյն Կորնթոսի՝ որոյ գաղթականութիւնն իսկ էր. եւ ամենայն իսկ համօրէն պատմութիւն կղզւոյն այնորիկ զՍիրակուսացւոց պատմութեւնն է կայ կախեալ: Յառաջնումն ազատ ինչ տէրութիւն էր ընդ ազնուականաց իշխանութեամբ (735—484): Յետոյ եհաս իշխանութեան Գելոն (484) եւ եղեւ երախտաւոր քաղաքին, առաւել պատերազմ ընդ Կարքեդոնացւոց՝ յորժամ սկսան նոքա զառաջինն նուաճել զամենայն Սիկիղիա, եւ կանգնէր յաղթութիւն ի վերայ Կարքեդոնացւոցն առ Հիմերաւ (480): Զնա պայազատէր եղբայր նորա Յերոն Ա. (477) որ ընդարձակեաց զսահմանս Սիրակուսացւոցն եւ ունէր յարքունիս իւրում ժողովեալ զերեւելի երեւելի բանաստեղծս Յունաց աշխարհին (զՊինդար, զԷսքիւղոս, զՍիմոնիդէս եւ զայլս). եւ զՅերոն յաջորդէր եղբայրն Թրասիբուղոս (467): Թրասիբուղոս վաղ ուրեմն (յամի 466) իբրեւ բռնաւոր մերժեցաւ, եւ մուծաւ ընկերահաւասարեաց առաջնորդութեանն պայման (466—405): Յայսմ ժամանակի ամբարձան Սիրակուսացիք ի ծագ զօրութեան եւ մեծութեան, մանաւանդ յորժամ զԷգրիգենտ հնազանդեցին (446) եւ յաղթեցին մեծի արշաւանի Աթենացւոցն (415—413):

Բայց յետ այնորիկ աջող համարեցան Կարքեդոնացիք միւանգամ տալ պատերազմ ընդ Սիրակուսացւոց (յամէ 410), եւ յաջողէր եւս Կարքեդոնացւոցն. ուստի եւ բազում խռովութիւնք անդէն ի ներքս ի Սիրակուսացւոց քաղաքին լինէին, որովք եգիտ մուտ բռնաւորն Դիոնիսիոս Ա. բարձրագոյն իշխանութեանն հասանելոյ (405): Ընդէն ի նմին ժամանակի եւ յետոյ եւս յորժամ միւսանգամ սկսաւ պատերազմն (396), վասն ժանտին միայն որ ի զօրս Կարքեդոնացւոցն անկաւ՝ ապրեցաւ քաղաքն

Սիրակուսացւոց: Նոյն ուրեմն յորժամ եղեն զաշխիք խաղաղութեան ի միջի՝ դառնեցին երկոքին կողմանցն որ ինչ գրաւեալ ունէին, եւ Դիոնիսիոս Բ. յաջորդէր իշխանութեանն (368): Ըստ ջանայր Դիոն խնամի նորա ուղղել զնա ի վերլուծութենէն եւ յանառակութենէն ի ձեռն Պղատոնի, բայց զուր եւ ընդ վայր. յայն սակս խռովութիւն եւ անիշխանութիւն գտանէր մնալ ի Սիրակուսա, եւ այնպէս մնա ինն յառնուլ ընէր ամենայն Սիկիլիա ի Կարքեդոնացւոցն (360—354): Բայց խնդրեցին Սիրակուսացիք թիկունս օգնականութեան ի Կորնթացւոց. առաքեցաւ Տիմոլէոն նաւատորմիղ նաւուք, եւ մերժեալ զԴիոնիսիոս եւ հալածեալ զԿարքեդոնացիսն առ Կրիմիսոս գետով ի կրկին ազատութենէ ազատեաց զքաղաքն Սիրակուսացւոց, եւ յօրինէր միւսանգամ զպայման ընկերահաւասարաց առաջնորդութեանն (345—340):

Բայց ապա ուրեմն յաջողէր Ագաթոկլեայ որ բռնաւոր լեալ էր՝ առնուլ զգահակալութիւն իշխանութիւնն ի բռնի օգնականութեամբ Կարքեդոնացւոց եւ պահել եւս (317—289): Եւ թշնամացեալ նորա ընդ նոսա՝ իբրեւ ի նեղ անկեալ պաշարեցաւ ի քաղաքին Սիրակուսացւոց՝ անցաւ նաւ զօրու յԱփրիկէ. եւ նա աշխարհն մեծ պատերազմ ընդ Կարքեդոնացւոց եւ արար յաղթութիւնս մեծամեծս, բայց վախճան պատերազմին օգուտ Կարքեդոնացւոցն եղեւ (311—306): Յետ մահուանն Ագաթոկլեայ խռովութիւնք եւ պժտութիւնք ի Սիկիլիա զօրացեալ. զայլն հասանէին Կարքեդոնացիք առաջի քաղաքին Սիրակուսացւոց: Յայնժամ կոչեցին Սիրակուսացիք զՊիւռոս ի թիկունս օգնականութեան. պաշարեաց Պիւռոս զԼիլիբէոն եւ կամէր պատերազմել յԱփրիկէ. բայց քանզի զամենայն իւր կողմն Սիկիլիացւոց գրաւեալ ունել խորհէր Պիւռոս՝ յայն սակս ատելի եղեւ Յունաց Սիկիլիացւոց որք եւ ստիպեցին զնա մեկնել անտի ի բաց (278—276):

Բայց սակայն յետ նորա մեկնելոյ միւսանգամ սկսան խռովութիւնքն, քանզի Մամերտինացիք՝ որ էին վարձկան զօրականք Կամպանիացւոց, յետ ունելոյ բռնութեամբ զքաղաքն Մեսսինայ՝ կոտորելով զամենայն արս քաղաքին, ասպատակ ընդ ամենայն Սիկիլիա: Յայն սակս ընտրեցին Սիրակուսացիք զՀիերոն Բ. ի զաւակէն Գելոնի ի զօրավարութիւն (275) եւ ի թագաւորութիւն (270): Սա յաղթեաց ի վերայ Մամերտինացւոցն եւ հալածեաց զնոսա եւ պաշարեաց զնոսա ի քաղաքին Մեսսինացւոց: Բայց Կարքեդոնացիք քանզի ոչ կամէին թէ զօրասցին Սիրակուսացիք, հասին կալան պահապանօք զդղեակն Մեսսինայ: Յայնժամ եւ Մամերտինացիք դիմեցին առ Հռոմայեցիսն, որով սկսաւ առաջին պատերազմն Պունիկեան:

զՀռոմայեցիսն, 2000 միայն ազատեցաւ ի նոցանէ, 500 այր հանդերձ Հռեգուղեաւ եղեն ձերբակալ (255)։ Մեւս եւս զօր հանեալ նոյնպէս չկարաց ունել զդէմ Կարքեդոնացւոցն, եւ ի դառնալ նոցա այսրէն ի Սիկիլիա՝ յ360 նաւաց անտի հազիւ հազ թէ 80 նաւք մնացին, եւ Մեսանա միայն էր ի ձեռս նոցա։

Այսպէս միւսանգամ լինէր յերկոցունց կողմանց հատուածս կշիռ կշիռ, եւ տեւէր մեծաւ դառնութեամբ պատերազմն (255)։ Սակայն Հռոմայեցիք յետ ջնջելոյ նաւաց իւրեանց՝ զամս բազումս խորշէին ի նաւական պատերազմէ, եւ ի ճակատ առ ճակատ կռուելոյ ի ցամաքի առ երկիւղի փղացն. բայց յետոյ Մետեղղոս յարձակեալ ի Պանորմոսէ՝ յաղթեաց Ասդրուբաղայ եւ հան ի նմանէ զփիղսն ամենայն։ Այնուհետեւ կռուէին միշտ երկոքին կողմանքն գրաւել զարեւելեան ծագս Սիկիլիոյ՝ այսինքն զԼիլիբէոն եւ զԴրեպանոն, զորս պաշտպանէր Ամիլկար Բարկաս զօրավար Կարքեդոնացւոց (յամէ 247)։ Կամեցան Կարքեդոնացիք զի խաղաղութիւն լինիցի, եւ առաքեցին վասն նորին խօսից զՀռեգուղոս ի Հռոմ. բայց նա եցոյց Հռոմայեցւոցն թէ վնասակար է Հռոմայեցւոց այն խաղաղութիւն. եւ յորժամ դարձաւ Հռեգուղոս ըստ խոստմանն՝ սպանին զնա Կարքեդոնացիք տանջանօք վասն խօսուն նորա (250)։ Իբրեւ տակաւին դեգերէր յերկոցունց կողմանց յաղթութիւնն եւ նաւք Կարքեդոնացւոցն սփռէին առէպ ասպատակ ի Սատրին Իտալիա՝ յօրինեցին Հռոմայեցիք մեւս եւս տորմիղ նաւուց ի տրոց ոմանց ոմանց եւ ի գանձուց մեհենիցն՝ նաւս 200 (յամի 242). որքոք եհար Դուտատիոս Կատատուղէոս Հիւպատոս զնաւս Կարքեդոնացւոցն առ Եգատեան կղզեօք, զմանս մի նոցա ծակեալ ընկղմէր ի խորս, եւ զմանս մի գրաւեալ առնոյր (241)։ Հաննոյ զօրավար նաւուցն հասանէր փախստեայ ի Կարքեդոն եւ դատապարտեալ մեռանէր. իսկ առ Ամիլկար ի Սիկիլիա առաքեն հրաման Կարքեդոնացիքն՝ առնել դաշինս խաղաղութեան։

Խոստացան Կարքեդոնացիք թողուլ ամենեւին զՍիկիլիա, տալ յետս զգերին եւ հատուցանել վասն ծախուց պատերազմին 2200 տաղանդ՝ ի ժամանակի տասն ամաց, բայց առժամայն հազար վաղվաղակի։ Իսկ Սիկիլիա բաժանեցաւ ի մէջ Հռոմայեցւոց եւ Սիրակուսացւոց եւ այնպէս անկաւ ընդ բարձրագոյն իշխանութեամբ Հռոմայեցւոց. եւ եղեւ Սիկիլիա առաջին նահանգ[1] տէրութեանն Հռոմայեցւոց (238)։

## 348

Այսպէս եղին Հռոմայեցիքն յանձնապաստանք ի պատերազմէ անտի նախանձորդին իւրեանց, եւ պատրաստէին զանձինս յայլ եւս

1 Provincia.

առաջուստ կռուոյն։ Ընդէմ հասանէր միւս ընկերն Սկիպիոնեայ՝ Սեմպրոնիոս, եւ հակառակ խորհրդոյն Սկիպիոնեայ բանակէր առ Տրեբիա գետով, եւ զպերթէ ջնջէր իսկ զօրն Հռոմայեցի. ամենայն իսկ համօրէն ազգք կողմանց յայսկոյս Պադոսի յարեցան յԱննիբաղ. անկեան ի ձեռս Կարքեդոնացւոց ամենայն ամրոցք Հռոմայեցւոցն։ Աննիբաղ յետ հանգչելոյ սակաւ մի ի Գաղղիացւոց աշխարհին՝ անցանէր մեծաւ դժուարութեամբ ընդ Ապենինեան լերինսն՝ հասանել ի կողմանս Էտրուրիացւոց ընդ երկայնութիւն հովտին Առնոս գետոյ՝ որ յորդեալ զեղեալ էր ի գարնանային ջուրցն (յորում ժամանակի իսկ յաւելուց աչաց ակն նորա եւ կուրացաւ միով աչաւն)։ Այն ինչ հասեալ նորա ի յամանաղջին վայրս՝ պատահէր նմա Փղամինիոս նոր հիւպատ՝ զոր եւ հրապուրեալ արկ Աննիբաղ ի տեղի ինչ որ ոչ պատեհ էր հակառակորդին. այլ այնպէս ձեռք ի ճեղքեց ճակատեալ Փղամինիոս առ Տրասիմենեան ծովակաւ՝ խորտակեցաւ չար քան զամենայն, ինքն իսկ Փղամինիոս յուսահատ լեալ դիմեաց ի մահ. անդ անկաւ 15,000 այր Հռոմայեցի ի սուր եւ ի ջուր, եւ 6000 եղեւ ձերբակալ։ Յաւուր ճակատուն այնորիկ եղեւ սաստկութիւն երկրի եւ սրտառուեցաւ գետոցն անդ ուրեմն մեծ, բայց չկարացին պատերազմողքն վասն կատաղի սաստկութեան։

350

Հորդեալ էր այնու հետեւ ճանապարհ առաջի Աննիբաղայ հասանել ի Հռոմ. բայց չունէր նա այնչափ մեքենայս պաշարման մեծամեծաց վասն այնպիսի ընդարձակ քաղաքին. նոյն իսկ առջող հասանելոյ նորա ընդ արեւելեան ծովեզերսն ընդ մէջ մինչ մինչ Սաբինացի ազգացն խաղալ յԱպուլիա, ուր զպատերազմող ազգսն Սամնիտ խառնէր հանցէ յապստամբութիւն։ Առ հասանէր զհետ նորա Փաբիոս Մաքսիմոս՝ Կունկտատոր (Յամրագնաց) զոր յետ Տրասիմենեան ճակատուն կարգեցին Հռոմայեցիքն դիկտատոր։ Նա այնպէս զգուշութեամբ խորշէր չտալ ճակատ՝ որպէս Աննիբաղ որոնէր գրգռէր տալ պատերազմ. բայց երթայր նա ամենայն ուրեք զհետ Աննիբաղայ եւ դիտէր զնա միշտ։ Նա եւ իբրեւ ի միում նուագի մերձեցուցին զԱննիբաղ առաջնորդք նորա եւ զօրս յանկարծ պաշարեալ ի ձորի ուրեք շուրջանակի ի Հռոմայեցւոց, հազիւ հազ ապրէր խորագիտութեամբ. զի անդէն ի խուռն արագագած գիշերի խոյս ընդ եղջերս զուարակացն կապեալ լուցանէր հրով եւ զբազմամբոխս թափառական երամակն ի վերայ արձակէր. ի շփոթութեան անդ ինքն Աննիբաղ զօրօքն ապրեալ ելանէր ընդ կիրճսն։ Աննիբաղ յանցանել իւրում զանդրադարձս Փաբիոսի խորամանկութեամբ հրամայէր չապականել զգեղսն. Հռոմայեցիքն կասկածել սկսան ընդ Փաբիոս թէ

դուցէ ի բանի է ընդ Թշնամեացն եւ տուեալ մասն մի զօրաց նորա ի ձեռս Մինուկեայ Ռուփոսի՝ որ Թողեալ այնուհետեւ զերբեմնան յորս միշտն շրջէր Փաբիոս՝ անկաւ ի դաշտին Աննիբաղայ, բայց Փաբիոս ի վերայ հասեալ ազատեաց զնա ի տագնապէն, եւ ի կատարել ամին դնէր ի բաց զիշխանութիւն դիկտատորութեանն, եւ ընտրեցան փոխանակ նորա երկու հիւպատք՝ Տերենտիոս Վարռոն եւ Էմիլիոս Պաւղոս, մին յանդուգն եւ միւսն զգուշաւոր, որ փոխանակաւ աւուր աւուր կալին զօրավար, Թէպէտ եւ հակառակ էր այսպիսի ընտրութեան Փաբիոս։ Տերենտիոս հակառակ խրատուն Էմիլեայ որ զհետ երթայր հետոցն Փաբիոսի՝ բախէր փութանակի առ Կաննեօք ընդ Աննիբաղայ. անկան ի Հռոմայեցւոց 40,000 հետեւակք, 2700 հեծեալ, 80 սենատորիկոսք հանդերձ Պաւղոսիւ Էմիլեաւ, մնացեալքն եղեն ձերբակալ. ամենայն Ստորին Իտալիա յարեցաւ յԱննիբաղ։ Յետ Կաննեան ճակատուն առաքեաց, ասեն, Աննիբաղ ի Կարքեդոն երիս սափորս՝ ոսկի օղոց հանելոց ի բազկաց անկելոցն ասպետաց՝ լինել վկայ յաղԹութեանն։ Սակայն չհամարեցաւ նա ի դէպ տկարացեալ զօրօքն անդէն խաղալ ի վերայ Հռոմայ՝ որպէս տային նմա խրատս։

Խռովեցաւ ժողովուրդն Հռոմայեցւոց. հազիւ հազ հանդարտեցուցին սենատորիկոսքն. առաքեցաւ իմաստուն զօրավարն Կղաւդիոս Մարկեղոս ի Կանուսիոն 10,000 փախստէիւքն եւ կոչեցաւ յետս Տերենտիոս։ Ընդ առաջ եւ նորա ծերակոյտն ամենայն՝ շնորհակալ լինել նմա զի չեղեւ յուսահատ ի փրկութենէ համայնական տէրութեանն. եւ ինքեանք եւս՝ յորժամ յետ այսր ճակատուն առաքեաց Աննիբաղ զի դաշինք խաղաղութեան լինիցին՝ չետուն Թոյլ հրեշտակացն մտանել ի քաղաք անդր, այլ բացուստ ի բաց տային պատասխանի Թէ ոչ լիցի խաղաղութիւն մինչ չեւ մեկնեալ Աննիբաղայ ի կողմանց Իտալիացւոց. եւ այս պնդութիւն եւ հաստատութիւն ապրեցոյց զՀռոմ։

Քանզի եւ Աննիբաղ տկարացեալ էր յանչափ պատերազմաց եւ ի դնելոյ աստ անդ պահապանս, եւ ի բարեկեցիկ քաղաքի անդ Կապուացւոց յորում ձմերեալն էր՝ մեղկացան Թուլացան բիրտ զօրականքն. եւ մասն մի քաղաքացեաց իւրոց՝ որոց յանձն արարեալ էր ժողովուրդն Կարքեդոնացւոց առաքել զօրս ի Թիկունս օգնականութեան՝ չառաքէին, նախանձեալք ընդ Աննիբաղ։ Իսկ դաշնաւորութիւնքն զոր կռեաց Աննիբաղ ընդ Յերոնիմեայ նորոգ կացելոյ Թագաւորին Սիրակուսացւոց Թոռինն Յերոնեայ (յամէ 215), եւ ընդ Փիլիպպեայ Բ. արքայի Մակեդոնացւոց՝ չեղեն ինչ նմա օգուտ որպէս կարծէրն. քանզի Փիլիպպոս զբաղեալ իմն էր ի Յունաց աշխարհին եւ Յերոնիմոս անդէն յետ սակաւ ինչ միոյ սպանանէր։ — Նմին հակառակ Հռոմայեցիք պատրաստեցան մեծաւ ժրութեամբ, եւ անդէն զարնայնի (215) հա-

նէին զօր ի մարտ պատերազմի։ Յերկուս ճակատս յաղթէին Հռոմայեցիք՝ առ Նոլա քաղաքաւ զօրավարութեամբ Մարկեղեայ (215) եւ առ Բենեւենտաւ (214) զօրավարութեամբ Սեմպրոնեայ Գրակքեայ որ կարգեաց ի ճակատ զլեգէոնս ծառայիցն խոստացեալ նոցա ըստ այնր ազատութիւն։

Այնուհետեւ սկիզբն առնէին Հռոմայեցիք զքաղաքսն ապըստամբեալս կշտամբել. անցեալ Մարկեղոս ի Սիկիլիա պաշարէր զՍիրակուսացիսն՝ որք զհետեւեալ Աքերոնիմեայ յերկպառակս եղեն զինակալ, եւ հազիւ յետ երկուց ամաց առնոյր Մարկեղոս զքաղաքն (214—212)։ Եւ գեղեցիկ գեղեցիկ գործք ճարտարացն փոխեցան անտի ի Հռոմ։ Թէպէտ եւ Աննիբաղ ընդ այնր եկն առ զՏարենտոն եւ զյունական քաղաքս հարաւային ծովեզերացն՝ սակայն իբրեւ Հռոմայեցիք ի նեղ արկեալ պաշարեցին երկուք լեգէոնօք զԿապուա՝ փութացաւ Աննիբաղ հասանել առաջի դրանց Հռոմ քաղաքի, յուսացեալ թէ ի բաց կացցեն Հռոմայեցիք ի պաշարմանէն՝ գալ փրկել զքաղաքն զայն գլխաւոր։ Բայց մերժեցաւ Աննիբաղ յետս, եւ անտուստ Կապուացիքն եւս առաւելուն վտանգի ետուն ձեռս ի Հռոմայեցիսն (211)։ [illegible] 27 արարին անձամբք անձանց եւ 53 ի նոցանէ անկան ի սուր դահճաց, քաղաքացիքն փոխեցան ի գերութիւն եւ ինչք նոցա տուան ի ձեռս օտարաց որ անդր զաղթեցին։ Իսկ զանձք Կապուացւոցն փոխեցան ի Հռոմ, եւ բարձան ի նոցանէ ամենայն իրաւունք եւ տիրէին այնուհետեւ վերակացուք ի Հռոմայեցւոց։ Յետ երկուց ամաց (209) առաւ եւ Տարենտոն, տարաւ անտի Փաբիոս Մաքսիմոս 30,000 այր ի գերութիւն եւ 70,000 լիտր ոսկի եւ արծաթ յաւարի, բայց զանդրիս "դիցն ցասուցելոց„ եթող անդ Յունաց։ Ահն եւ հոյն Հռոմայեցւոց ընթանայր ընդ ամենայն Իտալիա եւ սոսկալեալ դառնային միւսանգամ առ Հռոմայեցիս ապըստամբեալք։ Իսկ իրքն Աննիբաղայ երթային եւ վատթարէին ամ յամէ. թէպէտ եւ զՄարկեղոս (զսուսերն Հռոմայ) յետ բազում ճակատուց սպան ի դարան եւ սպան զնա ի կռուին առ Վենուսիա (208)։ Հալեցաւ Աննիբաղ ընդ դիմաց նորա մեծաւ մտադրութեամբ եւ եա այրել վայելուչս եւ առաքեաց զանձինն առ Հռոմայեցիսն։

## 351

Այնուհետեւ մի միայն յոյս Աննիբաղայ էր յաշխարհէ անտի Սպանիացւոց՝ քանզի թող էր զնա հայրենի աշխարհն իւր անշնորհակալութեամբ։ Անդ ի Սպանիա կռուէր Ասդրուբաղ ընդ Հռոմայեցւոց մերթ տուեալ յաղթելով եւ մերթ նոքա, եւ յետ պարտելոյ եւ անկանելոյ ի միում ճակատու երկուց եղբարցն Պ. եւ Գն. Սկիպիոնեաց՝ տիրեաց Ասդրուբաղ ամենայն հարաւային կող-

353

Յայնժամ սկիզբն արարին Հռովմայեցիք աշխարհակալութեանց յարեւելս եւ յաջողէր նոցա սքանչելապէս։

Առաջին թշնամի նոցա էր Փիլիպպոս Բ. արքայ Մակեդոնացւոց որ զօրաւիգն օգնականութեան լեալ էր Կարքեդոնացւոցն, նեղէր զԻլիւրիկեցիս եւ զՀռոդացիս եւ կամէր յայնմ հետէ հնազանդել զքաղաքն Աթենացւոց։ Իսկ Հռովմայեցւոց պատճառեալ՝ որպէս թէ կամիցին փրկիչ լինել Յունաց ազատութեան՝ յայտ արարին Փիլիպպեայ թէ գալոց են ի վերայ նորա պատերազմաւ (200). յաղթութեամբ պատերազմին որ առ Կինոսկեփաղէօքն մերձաւ յերրորդումն ամի ի ձեռն Կուինտեայ Փղամինեայ՝ զօրացան յոյժ Հռովմայեցիք (197)։ Յերկրորդում աւուր ճակատուն եհն եկաց Փիլիպպոս առաջի Փղամինիոսի, եւ եղեւ ապաստան ի շնորհս Հռովմայեցւոցն։ Այնպէս եղին նմա պայմանս խաղաղութեան ըստ նմանութեան պայմանացն որք ընդ Կարքեդոնացւոց եղան. սահման առեալ Փիլիպպեայ՝ միայն աշխարհն Մակեդոնացւոց. առնկեցաւ տալ յետս զաւորմիղ նաւաց իւրոց բաց ի 5 նաւուց, հատուցանել զծախս պատերազմին 1000 քանքար եւ թողուլ ազատ զՅունաց աշխարհ։ Փղամինիոս իսկ եւ իսկ եղթայր յԻսթմեան խաղսն եւ քարոզել տայր ազատանել թէ ազատեցան քաղաքքն Յունաց ի տրոց եւ ի հարկց եւ ի պահանորդ զօրացն Մակեդոնացւոց. երասն անբովն գոչիւն մեծ ուրախութեան։ — Բայց մնաց անուն զօր պահապան հռովմայեցի։

Այս հրաման ետուն Հռովմայեցիք եւ Անտիոքայ Գ. Մեծի մեծազօր թագաւորի Ասորւոց, թողուլ ազատ զՅոյնս որ յԱսիացւոց աշխարհին էին եւ ի բաց գնալ յԵւրոպայ. բազում ամս ընդ պատգամաւորութիւնս հանէին. քանզի արքայ Անտիոքոս յօգնականութիւն յուսացեալ էր յԵտոլիացւոցն եւ ի Մակեդոնացւոցն եւ ի գործակցութիւն Աննիբաղայ։ Բայց ջանային թէ Հռովմայեցիք նենգութեամբ եւ քսութեամբ զԱննիբաղ՝ արգել լինել միաբանութեանն այնմիկ, եւ խնդրէին տալ ի ձեռս զԱննիբաղ (195) որ յետ փախչելոյ մնացապուր յԻւրմէ հայրենի աշխարհէ ի կողմանս Ասորւոց՝ յետ ուսոյ ուրեմն հաւանեցուցեալ էր զԱնտիոքոս տալ պատերազմ ընդ Հռովմայեցւոց (193) անդէն ի նոցա աշխարհին յԻտալիա։

Մինչեւ ցամն 191 ի նեղ անկեալ մերժեցան Անտիոքն յաշխարհէն Յունաց։ Անտիոքոս հան զպարհակապատան իւր յամուր ամուր քաղաքաց Փոքուն Ասիոյ (ի Լիւսիմաքիայ, ի Սեստոս եւ յԱբիւդոսէ) եւ երթայր ի քաղաքն Ասպրխացւոց։ Բայց անդէն ի վերայ սահմանացն Լիւդաստանի առ Մագնեսիա մօտ ի Սիպիւղոս լեռան հարին նմա Հռովմայեցիք, որոց զօրավար կայր Գ...

կլոս Սկիպիոն (առ որում կայր իբրեւ խրատտու եղբայրն նորա Ափրիկեցին Սկիպիոն) եւ յաղթէր նմա Սկիպիոն ապառասպառ (190). եւ առնոյր նա անուն Ասիացի։ Լինէին գաշինք խաղաղութեան ի մէջ եւ ի բաց թողոյր Անտիոքոս ի սահմանաց թագաւորութեան իւրոյ մինչեւ ցՏաւրոս, խոստանայր տալ 15,000 քանքար եւ մատնել ի ձեռս զԱննիբաղ։ Իսկ Աննիբաղ թէպէտ եւ փախուստեամբ ապրեցաւ, այլ միշտ հալածեալ ի Հռոմայեցւոցն շրջէր թափառական, մինչեւ յետոյ իբրեւ յոյժ ի նեղ արկաւ առ թագաւորին Բիւթանիայ՝ դեղ առեալ անձամբ անձին առնէր անդէն ի նմին ամի յորում յաղթականն նորա Սկիպիոն մեռաւ վտարանդի ի Լիտերին Իտալիա՝ յոր մեկնեալ էր նա ինքնակամ վասն ապրելոյ ի ձեռաց թշնամեաց իւրոց (183)։ Յառաջ իսկ քան զայս ամենայն՝ եւ Էտողացիք որ յետոյ կացեալ էին միաանգամ՝ նուաճեցան ընդ լծով, եւ կրեցին պատիժս ծանրագոյն հարկօք պատերազմի (189)։

Զկնի Պերսեւս որդի Փիլիպպեայ Բ. արքայի Մակեդոնացւոց տուեալ նենգութեամբ սպանանել հօրն իւրոյ Փիլիպպեայ զեղբայր իւր զերէց զԴեմետրիոս զառաքինագոյն՝ խորհէր թափել զանձն ի լծոյ Հռոմայեցւոցն, գրգռեցաւ միւս եւս պատերազմ (172—168), եւ եղեւ զսա պատերազմին ճակատամարտին որ առ Պիւդնաւ եղեւ զօրաւարութեամբ Պաւղոսի Էմիլեայ եւ ձերբակալ եղեալ Պերսեւս՝ անկաւ ի թագաւորութենէ (168)։ Ի նմին ժամանակի եւ Անիկիոս յաղթէր Գենտիոսի արքայի Իլիւրիկեցւոց (167) եւ ապականէր զԷպիրոս հրով եւ սրով։ Երկոքեան թագաւորք եղեն զարդ ձաղանաց երկոցունցն յաղթողաց. Մակեդոնիա եւ Իլիւրիկէ յառաջնումն եղեն ազատ տէրութիւնք ընդ խստագոյն պայմանօք, այլ յետ 20 ամաց յորժամ անց ոմն ի մէջ առեալ զանձնէ թէ որդի Պերսեայ իցէ, եւ ապստամբեցոյց զերկիրն՝ նուաճէին զխաբեբայն զայն (զսուտ Փիլիպպոսն) Հռոմայեցիք ի ձեռն Մետեղեայ, եւ այնուհետեւ Մակեդոնիա Էպիրոսիւ հանդերձ լինէր նահանգ Հռոմայեցւոց եւ անուն նորա՝ Մակեդոնիա (148)։

354

Անցեալ էին 50ամեայ ժամանակք ի վերայ հնազանդութեան Կարքեդոնացւոց ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոցն, եւ զօրացաւ կալաւ ի Հռոմ խորհուրդ այնոցիկ՝ որ ասէին թէ ջնջել պարտ է եւ եղծանել զտէրութիւն նոցա, զի բարձցի այնուհետեւ ամենայն երկեւղ եւ կասկած. սոցա գլուխ էր մանաւանդ Պորկիոս Կատոն՝ որ յամենայն ճառսն իւր առէպ զնոյն կրկնէր[1]. իսկ գլուխ հակառակ կարծեացն՝ Սկիպիոն Նասիկա, որ հարկ համարէր կալ

1 Praeterea censeo Carthaginem esse delendam.

ծոյլ Կարքեդոնի, զի մի՛ ի թուլութիւն կարծանեսցին Հռոմայեցիք։ Մասինիսաս արքայ Նումիդացւոց իբրեւ գործի իմն լեալ Հռոմայեցւոցն՝ անդադար գործս թշնամութեան հակառակ Կարքեդոնացւոցն ցուցանէր, թէպէտ եւ բազում անգամ տրտունջք սոցա ի Հռոմ հասանէին՝ այլ զուր եւ վայրապար։ Ուստի յորժամ նոր ինչ յարձակումն եհաս ի վերայ Կարքեդոնացւոց ի Մասինիսայ՝ զինուք մղեցին զնա յետս (152), եւ ցուցին ի Հռոմ թէ ոչ ինչ հակառակ դաշանցն գործեցին։ Իսկ իբրեւ իմացեալ կամեցաւ Ուտիկա հնազանդել Հռոմայեցւոց՝ յայնժամ պատճառ համարեալ Հռոմայեցւոց զժամն՝ վճիռ եհան հրապարակաւ թէ անցցեն Հռոմայեցիք զօրք յԱփրիկէ (149)։ Զահի հարեալ Կարքեդոնացւոցն յանձն առնէին զանձինս ծերակուտին առնել ընդ նոսա զինչ եւ կամիցի, եւ եսուն պատանդս 300 եւ զզէն եւ զզարդ իւրեանց ի բաց։

Յայսր վերայ՝ պահանջեցաւ ի նոցանէ ի բաց ելանել ի քաղաքէն եւ երթալ բնակել 80 վտաւան (երկուս մղոն) հեռագոյն ի ծովեզերէն, եւ թոյլ տալ զի ի հիմանց բրեալ քանդեսցի Կարքեդոն։ Զայրացեալ զինեցան ընդ պահանջմանն, ի յուսահատութիւն կործանեցան. ի մեծի եռանդն միաբանութեամբ առ պատերազմ կամ ի մահ կամ ի կեանս, եւ չուառացեալք իմն ջան եւ ճգնութիւն վասն պաշտպանութեան քաղաքին ցուցանէին յայն երրորդ Պունիկեան պատերազմի (149—146)։ Գլուխ եկաց Կարքեդոնացւոց՝ Ասդրուբաղ ոմն անուն. խցին առաւանեցին զդրունս քաղաքին, փակեցին զնաւահանգիստն ձգել շղթայս առաջի նորա։ Յօրինեցին զէնս նորոգ՝ անհնարին արագութեամբ. ամենայն ծեր եւ մանուկ գործէր ժիրաժիր, զտանիսն քակէին վասն կազմելոյ նաւ ի գերանացն, ամենայն նիւթ քրէական ի քաղաքին ժողովեցաւ ի շինուած զինուց. ի տունս, ի հրապարակս եւ ի մեհեանս եւս հնչէր ուրագ եւ սալն. եւ կանայք տային զվարսն իւրեանց՝ գործել լարս աղեղանց։ Այսպէս աւելի քան զամ մի եղեն դիմակալ երկուց հիւպատոսաց, նա եւ յորժամ քաջն Սկիպիոն Էմիլիանոս (որդեգիր տանն Սկիպիոնեայ Ափրիկեցւոյ) անց ի գլուխ զօրուն Հռոմայեցւոց վհատելոցն եւ լքելոց, յերկարէին իրքն մինչեւ ցամն երկրորդ՝ յորում ամի բուռն ամենայն զօրութեամբն յարձակեցաւ Սկիպիոն Էմիլիանոս ի վերայ քաղաքին, եւ առ իսկ ի բուռն։ Ահաւոր ահագին կոտորածն եւ տեւէր աւուրս 6, մինչեւ ցանկալ հրդեհին ի քաղաքի անդ։ Յ700,000 բնակչացն հազիւ թէ 50,000 մնացին կենդանի որք եւ ի գերութեան վարեցան։ Յածիւն դարձաւ Կարքեդոն այրեցեալ աւուրս 17, այն՝ որ 700 ամ դշխոյ եւ հրամանատար լեալ էր ծովու։ Սահմանք Կարքեդոնացւոցն եղեն նահանգ Հռոմայեցւոց, եւ անուն՝ Ափրիկէ (146), իսկ Սկիպիոն Էմիլիանոս առ իւր անուն՝ Կրտսեր Ափրիկեցի։

## 355

Ընդ նոյն ժամանակս զամենայն հնարս հնարէին Յոյնք եղանել յազատութիւն, այլ չհամարձակեցին Աքայեցիքն եւ Մակեդոնացիք ընդ միմեանս (150) եւ կոչեցին Մակեդոնացիք զՀռոմայեցիսն լինել նոցա զօրաւիգն օգնականութեան. սոքա անցին ի մէջ լինել զատուցիչ խռովութեանց ի մէջ երկոցունցն (147)։ Այսոմ ինքնակամ իշխանութեան Հռոմայեցւոց ընդդէմ զայրան. Կորընթոս զօրծակքն, եւ անմտութեամբ իւն մերժեցին արհամարհանօք զերկուս հրեշտակութիւնս Հռոմայեցւոց, եւ պատրաստէին պաշտպանել անձանց պատերազմաւ։ Այլ անդէն յառաջին ճակատուն ջնջեաց սպառեաց Մետելլոս զաւկաւանձեան զունդ Յունաց. նորին յաջորդ Մումմիոս յաղթէր երկրորդ անգամ առաջի Կորընթոսի, եւ մտանէր ի քաղաքն հոյակապ եւ հրձիգ առնէր զնա հանդերձ մեծաւ մասամբք գործոց ճարտարացն Յունաց։ — Աշխարհն Յունաց եղեւ նահանգ Հռոմոց առեալ անուն՝ Աքայիա (146)։

Յամի 133 արար Սկիպիոն վախճան պատերազմի Սպանիացւոցն՝ որ զրեթէ յ200 ամաց հետէ տեւէր առանց ընդ մէջ հատանելոյ. անուանի եղեն ի միջոյ անտի Սպանիացւոցն մանաւանդ Վիրիաթոս անուն (146—140), եւ քաղաքն Նումանտիացւոց զոր պաշարեալ առ Սկիպիոն, ուստի եւ միւս եւս անուն կոչեցաւ նմա՝ Նումանտիացի (143—133)։ — Ի նմին ամի առին Հռոմայեցիք եւ զթագաւորութիւնն Պերգամոյ (որ հաստատեալ էր յամի իբրեւ 280) որոց էին սահմանք յայնժամ Փռիւգիա, Միւսիա, Լիկաոնիա, Լիւդիա, Յոնիա եւ Կարիա, պատճառելով թէ ժառանգութեամբ թողեալ էր այն Հռոմայեցւոց յԱտտաղեայ Գ. արքայէ Պերգամոյ (133—130)։

Այսպէս էին այնուհետեւ սահմանք ընկերհաշտութեանն Հռոմայեցւոց ի Տաւրիտական լերանց մինչեւ ցԱրձանան Հերակլէ եւ ի հիւսիսային ծովեզերաց Ափրիկեայ՝ ցԵփրատ Ասիոյ։

Ի նահանգսն առաքէին Հռոմայեցիք ի վերակացութիւն՝ զամփոխանակ բդեշխի կամ փոխանակ պրետորի, եւ ընդ նմա՝ Դեսպան զօր[1] եւ Գանձապահ[2]. յայս բդեշխութիւն ընտրէին հիւպատքն որ յետ կատարելոյ ամին իւրեանց ի Հռոմ՝ արկանէին վիճակս թէ ո՛ յերկուց հիւպատացն այսմ նահանգի կացցէ փոխանակ բդեշխի։ Փոխանակն բդեշխին անկ էր առաջնորդութիւն եւ դատաւորութիւն եւ հրամանատարութիւն զօրաց ի նահանգին։ Դատաստանքն լինէին ըստ Հռոմէական իրաւանց որ տակաւ երթային եւ հասանէին ի կատարումն, եւ լատինացի լեզուաւ։

Այսպէս իբրեւ ժամանակք ինչ ի վերայ անցանէին՝ փոխանակքն բդեշխաց կամ անթիւպատոսքն առաւել անձանց զա-

1 Legatus. 2 Quaestor.

հու ակաան ունել ուշ քան հնազանդելոցն օգտութեան։ Դատ-ճապահքն՝ որ էին ի մեծատուն ասպետաց անտի՝ իբրեւ մաքսա-պետք՝ խոստանային սահմանեալ ինչ չափ արծաթոյ տալ ի գանձ արքունեան՝ եւ ընդ այնր ինքեանք հարկօք, տուրք եւ հարկք յանխնայ հանէին արծաթ ի նահանգացն։ Թէպէտեւ կային օրէնք ինչ[1] որ տային իրաւունս նահանգացն ըկելոց մատուցանել ամբաս-տանութիւն զլկչէն յետ կատարելոյ ամի պաշտամանն նորա, բայց առկայն քանզի դատաւորքն եւ սենեկլիտականք յընչաւէտս ազատա-կանաց անտի էին՝ ըստ յաճախ իմն ստորութեան արձակէին զքա-անպատիժ զամբաստանեալսն եւ կամ առնուին սակաւիկ ինչ տու-գանս եւեթ։

## Գ.

Ներքին խռովութիւնք. — Առաջին պատերազմունք. — Աշխարհակալութիւնք մինչ-ցմիապետական իշխանութիւնն (133 — 30)։

## 356

Աշխարհակալութեամբքն այնոքիւք եւ ոչ գանձուքն որ ատէին յաւարի, նա եւ ոչ յունական ուսմամբքն եւ հրահանգօք որ յայնմ հետէ յաճախեալ սկսան, լաւագոյնք ինչ եւ յաջողագոյնք հռոմայեցիքն եղեն. այլ նմին հակառակ վատթարեցան եւ ապա-կանեցան յոյժ վարք նոցա. տոհմք ինչ ի տոհմիցն առ սակա-սակաւ գրեթէ զամենայն ինչ զշարժունս եւ զանշարժ ինչսն ձգե-ցին յիւրեանս, եւ ի նոցունց յօրինեալ կային ազնուականք մե-ծատունք. ի նոցա ձեռս էր մատակարարութիւն պաշտամանցն, ուր մնացեալք յազնուականացն եւ մեծ մասն ժողովրդեանն ի նեղութեան կային եւ ցանկային փրկութեան։ — Բարձեալ էր պատիւ, զօրութիւն եւ առաքինութիւն ի ծերակուտէ, յօրինաց եւ ի կրօնից։

Յայնժամ խորհուրդ խորհեցաւ հազարապետն Տիբերիոս Գրակքոս (որդի Կոռնելիայ՝ դստեր մեծի Սկիպիոնի Ափրի-կեցւոյ) բառնալ ի միջոյ զչարիսն՝ զհին ինչ (Լիկինեան) ագա-րակաց օրէնս յառաջ մատուցեալ. ըստ օրինացն այնոցիկ չէր համ-արձակ քաղաքացւոյ ունել կալուած աւելի քան զ500 արտավար գետին (133)։ Բայց սաստիկ ընդդէմ դարձան մեծատունքն ա-դար բանից նորա, որոց գլուխ էր Սկիպիոն Նասիկա, քանզի վնաս համարէին նոքա ընչից իւրեանց. յետոյ ուրեմն յորժամ Գրակքոս խնդրէր, զի միւսանգամ կացցէ հազարապետ՝ հարին զնա եւ զըն-կերս նորա արս 300, եւ արկին զդիակն նորա ի Տիբերիս։

Յետ տասն ամաց անդ ի մէջ կրտսեր եղբայր նորա Գայիոս Գրակքոս մատուցանել յառաջ զխորհուրդ եղբօրն, առաւել եւս սաստկութեամբ (123)։ Պահանջէր նա զի բաժանեսցի ամ

1 De repetundis (խնդրելոյ արծաթ յետս)։

խոստացեալ էին դաշնաւորաց իւրեանց որ յաղթանակացն աշխարհին էին՝ տալ իրաւունս քաղաքակից հաւասարութեան, բայց չէր պահեալ նոցա երբեք զխոստումն։ Իսկ եւ սպանաւ հազարապետն Դրուսոս, որ լեալ էր ջատագով իրաւանց նոցա, խորհեցան առհասարակ ապստամբութիւն (91). կամէին իսկ զԻտալիա ի մի ազատ տէրութիւն փոփոխել, եւ Կորֆինիոն լինելոց էր գլխաւոր քաղաք, եւ անդ ընտրեցին 500 պատգամաւորս իբրեւ ծերակոյտ, 2 հիւպատոս եւ 12 պրետորս։ Գլխաւոր ազգք էին Մարսք եւ Սամնիացիք, նմին իրի եւ այս պատերազմ կոչի յանուն պատերազմ Մարսից։ Յերկոցունց կողմանց առաւելութեամբ մղեցաւ պատերազմն, անկաւ 300,000 այր ի ճակատն (91 — 88)։ Եւ եղեւ վախճան պատերազմացն, տուեալ առ սակաւ սակաւ իրաւունս քաղաքակից հաւասարութեան ամենայն դաշնաւորացն որ ի բաց թողուին զզէնս (88)։ Ի նոցանէ քաղաքացեաց անուն յօրինեալ կարգեցան 8 նոր ցեղք։ — Մարիոս եւ առաւել եւս Սուղղա եղեն քաջանուն ի պատերազմի անդ. Սուղղա առ հիւպատոսութիւն, եւ եղեւ անհնարին սիրելի հռոմայեցւոց, բայց անդէն ապստամբին հռոմայեցւոց այլ եւս երկու թշնամիք, թէպէտ եւ հեռաւորք սակայն զօրաւորք զօրութեամբ այս ինքն՝ Միհրդատ եւ Տիգրան։

## 359

Առ Եւքսինոս ծովու կայր թագաւորութիւնն Պոնտացւոց, որոյ թագաւորք յիշին անդստին յամէ իբրեւ 500, եւ սերեալ էին նոքա ի թագաւորացն Պարսից։ Յայնժամ տիրէր Պոնտացւոց Միհրդատ որ անուանեալ կոչի Մեծ, եւ բաց ի Պոնտացւոց աշխարհէն գրաւեալ ունէր եւ զԿապադովկիա, զՓռիւգիա, զՊափլագոնիա, զԳաղատիա եւ զԲոսփորոս, էր նա քաջ անհնարին, եւ իբրեւ զԱննիբալ մշտնջենաւոր թշնամի հռոմայեցւոցն խաղերայից՝ որոց լուեալն խոկացեալ իւր գիտէին զնա. դիմակալ եղեւ նոցա ամս 30, եւ ոչ ընկճեցաւ ամենեւին ի նոցանէ։ — Դաշնաւոր էր նորա եւ խնամի՝ Տիգրան (կամ ուղղագոյն՝ Արտաշէս Ա. եւ յետ նորա Տիգրան) թագաւոր Հայոց որ յետոյ Ասորւոց եւս եղեւ թագաւոր (յամէ 85) փոխանակ արանցն փոտաց Սելեւկեանց։

Այլ իբրեւ գրգռեցին հռոմայեցիք զՆիկոմեդէս Գ. արքայ Բիւթանացւոց անկանել ասպատակաւ ի վերայ երկրին Միհրդատայ՝ ել այրն քաջ Միհրդատ ամենայն զօրութեամբ իւրով. գտեալ օգնականութիւն ի Տիգրանայ՝ յաղթեաց Բիւթանացւոցն եւ հռոմայեցւոց, եւ տիրեաց վաղվաղակի ամենայն կողմանց փոքուն Ասիոյ։ Եւ իբրեւ յայտ արարին նմա պատերազմ հռո-

մայեցիքն՝ անդէն եւ սպանանել յԱսիա 80,000 այր Հռոմայեցի իբրեւ պատասխանի բանից նոցա, եւ ընդ Թրակիա անցեալ՝ միջամուխ ի Յունաց աշխարհն հատանէր եւ հանէր զԱթենացիսն յապստամբութիւն (88), եւ սպառնայր իմն ի վերայ աշխարհին Իտալացւոց։

Յայնժամ մեծ մասն Հռոմայեցւոցն ընտրեաց զՍուղղա հիւպատ ի զօրավարութիւն պատերազմին որ ընդ Միհրդատայ էր, եւ նա կամէր անդէն երթալ առ զօրսն որ ի Կամպանիա էին։ — Այլ Մարիոս որ 70 ամաց էր յայնժամ, խանդացեալ ընդ նախանձորդն իւր՝ յանկոյս յինքն ձգէր քաղաքացիսն Իտալացւոց եւ յարոյց խռովութիւն եւ ապստամբութիւն ի Հռոմ օգնականութեամբ Սուղպիկեայ հազարապետի, մինչեւ առեալ Սուղպիկեայ 3000 այր ի սուսերամարտկաց (զորս ինքն ծերակոյտ հակառակ ծերակուտի անուանէր)՝ բռնութեամբ եւս ընտրել ապարապետ զՄարիոս։ Իսկ Մարիոս հրապարակաւ այնուհետեւ տայր զնոց զիրաւունս քաղաքակից հասարակութեանն, եւ կազմէր պատրաստէր ի մարտ պատերազմի։ Բայց Սուղղա աճապարեալ եհաս փութանակի ի բանակն․ յանկոյս զեզէնան յինքն, եւ յետ աւուրց ինչ սակաւուց ի վերայ անցանելոյ՝ թշնամաբար ի քաղաքն մտանէր։ Քաղաքացի ընդ քաղաքացւոյ մարտ եղեալ կռուէր․ բայց յետոյ սուրբ յաղթեաց Սուղղա, Սուղպիկիոս ի փախստեանն սպանաւ, եւ մազապուր Մարիոս եւ անկաւ յԱփրիկէ։ Յայնմ հետէ ընկալան պատրիկք զիրաւունս իւրեանց յետս․ բարձաւ օրէնսդրութիւն յայնցանէ՝ որոց իշխանութիւն ի ձեռս էր․ միայն ի ժողովս հարիւրաւորացն լինելոց էին այնուհետեւ վճիռք, եւ ստուարացաւ ծերակոյտն 300 նոր սենեկլետիկոսօք։ Դրդեալքն Սուղղայ ընտրեցան հիւպատոս Օկտաւիոս եւ Կիննա։ — Յետ այնորիկ խաղաց ի վերայ Միհրդատայ իբրեւ փոխանակ բդեշխի կամ անթիպատ (87)։

Զաւատովն իմն արագութեամբ հատանէր առնոյր զամենայն քաղաքսն Յունաց, եւ յարձակմամբ մտանէր յԱթէնս եւ առնէր կոտորած մեծ․ ապականէր զշինուածս քաղաքին, զերկայնաձիգ որմունսն Պիրէոսի, զԱկադեմիայն, զԼիկիոնն եւ զայլ եւս նոյնպիսիս, եւ ի մեհեանսն եւս լինէր ձեռնամուխ․ մինչեւ եւ զմեհեանն Դելփեացւոց առնէր կապուտ կողոպուտ ի վերջին ձօնեացն, եւ խաղայր անցանէր ընդ Մակեդոնիա եւ ընդ Թրակիա՝ ի փոքրն Ասիա։ — Յետ այնորիկ մերժեցաւ Միհրդատ յաշխարհէն Եւրոպացւոց՝ զկնի ճակատուց պատերազմին որ առ Քաղքեաւ եւ Օրքոմենաւ եղեն, եւ անդէն յԱսիա բազումք ի քաղաքաց նորա հրձիգ եղեն։ Բայց վասն զիպացն որ նորա ի Հռոմ դիպեցան՝ հարկ համարեցաւ Սուղղա կալեալ դաշինս խաղաղութեան, առեալ տոյժս վասն պատերազմին 2000 տաղանդ (86)։

360

Վասնզի ընդ նոյն ժամանակս Կիննա ջանայր մտանել ընդ միս ռամկին բազում ինչ օրէնս առաջի արկանելով, և յայն սակս իսկ մերժեցաւ յԻտալիայ որ էր ի կողմն ազնուականացն և փախեաւ ի կողմանս Կամպանիացւոց. անդ զումարեաց զունդ հարուստ, կոչեաց զՄարիոս յետս, և երկոքին վաղվաղակի սրամտութեամբ հասանէին ի Հռոմ, և առնէին կոտորած անհնարին ազնուականացն, ընդ որս սպանաւ և Ոկտաւիոս և Մարկոս Անտոնիոս ճարտարախօս հոյակապ (87): Իբրև զգաստ լինէր Սուղղա իրացն անցելոց՝ եդ զդաշինս և անդէն աճապարեալ գայր յԻտալիա: Մարիոս վաղվաղակի յետ ընտրութեանն եւթներորդ անգամ ի հիւպատոսութիւն՝ մեռաւ ջերմանք վասն անչափ շուայտութեանն և տագնապեալ յահէ անտի Սուղղայ (86): Իսկ Կիննա անդստին յիւրոց զօրաց սպանաւ յաղմկի ուրեք, յորժամ լուանն թէ մօտ հասեալ է Սուղղա (84):

Վասնզի հատեալ իսկ էր Սուղղա յԱսիայէ, և ի ձեռն պատանեկին Պոմպէի յաղթեալ 15 գնդաց մի ըստ միոջէ, և յետ այնորիկ եմուտ փառաւորութեամբ ի Հռոմ (83): Բայց և նա սկսաւ ցուցանել անագորոյնութիւն որպէս Մարիոսն: Ահագին և սոսկալի էին տարագրութիւնքն, և մանաւանդ որ ինչսն առնէր՝ ըստ կամակածանաց էր. սպանողքն առնուին զվարձս սպանութեանն իւրեանց. խզեալ անկեալ էին ամենայն կապք և զօդք բնութեան: Եւ ընծայի թիւ համարոյ սպանելոցն 15 այրք երեւելիք որ երբեմն հիւպատոսքն կացեալ էին, 90 սինկղիտիկոսք, 2600 ասպետք, և քաղաքացիք առաւել քան զ100,000: Չգոյր չափ ընչիցն զոր դահիճքն յափշտակեցին: Վարձկան զօրն Սուղղայ իբրև 120,000 այր՝ կային յԻտալիա ծախուք Իտալիացւոցն. ի Հռոմ 10,000 այր ի գերեաց առ զիրաւունս քաղաքակից հասարակութեան և զինչս այնոցիկ՝ որ տարագիրքն լեալ էին, զի լինիցին նոքա իբրև անձնապահք, առեալ զնոսա ի պաշտպանութիւն, որք և ի նորա անուն կոչեցան Կոռնելեանք: Յետ այնորիկ եա ընտրել զանձն ի դիկտատորութիւն մշտնջենաւոր, և յօրինեալ կարգէր զկնի ռամկավարութեանն ըստ պատրկացն կամաց, ըստ այնմ յօրինուածոյ ուստի այնչափ քաղաքային խռովութիւնքն եղին: Հռովմայեցիքն անդրէն յառաջին աննշանաւոր կերպարանս դարձան. թիւ սինկղիտիկոսացն էր 500, և հարկահանացն թիւ աճեցեալ՝ եղեւ 20, իսկ հաւադիտացն և քրմապետացն 15, և ընկալաւ ծերակոյտն զգործ դատաւորութեան յետս և զիշխանութիւն տալոյ զպատուանս (81):

Ապա յետ երկուց ամաց ի բաց եդ ինքնակամ զիշխանութիւն իւր, եւ ընտրել զհիւպատոս եւ ինքն գնաց ի գեւղ իւր (79).

բեալ. առնէին ձերբակալ զերեւելի երեւելիս առս ի Հռոմայեցւոց, զի ընդ բազմապատիկ արծաթոյ տացեն զնոսա յետս: Յայն ամս ժողովուրդն Հռոմայեցւոց առաք յանձն Պոմպէի (Գաբինեան օրինօք) դիկտատորութիւն ի վերայ կղզեաց եւ ծովեզերաց ընդարձակ իմն եւ անարգել իշխանութեամբ (67). Պոմպէոս կազմեալ պատրաստեալ արծաթով, զօրու եւ նաւուք ջնջեաց սրբեաց յերիս ամիս զամենայն ծովն Միջերկրական ի հինից անտի, եւ անդէն յիւրեանց իսկ աշխարհին առ նա զամուր ամուր տեղիս եւ զքաղաքս նոցա, եւ ի հազարաւոր Հռոմայեցւոց գերելոց անտի զոր եգիտ առ նոսա՝ եդ գաղթականս ի Սոլէք քաղաքին Կիլիկեցւոց, որ յայնմ հետէ Պոմպէապոլիս կոչեցաւ, վասն խափանելոյ զի մի միւսանգամ լինիցի սկիզբն հինից: — Այն ինչ ի գլուխ հանեալ Պոմպէի զպատերազմն հինից՝ անդէն յանձն եղեւ նմա Մանիլեան օրինօք հրամանատարութիւն (երկրորդ) պատերազմին ընդդէմ Միհրդատայ:

Քանզի Նիկոմեդէս Գ. թողեալ էր կտակաւ զթագաւորութիւն իւր Հռոմայեցւոց, բայց յարձակէր Միհրդատ հզօր գնդաւ ի Բիւթանիա (75): Լուկուղղոս զօրավար առ զառաջնորդութիւն պատերազմին, հար զտորմիղ նաւացն Միհրդատայ (73), եւ յետ յաղթութեանց ինչ՝ զԲիւթանիա եւ զՊոնտոս հնազանդէր (72—71). եւ Միհրդատ անկանէր փախստեայ առ Տիգրան թագաւոր Հայոց (70): Բայց եւ նմա յաղթեաց Լուկուղղոս ի ճակատն որ առ Տիգրանակերտաւ (69) եւ Արտաշատաւ (68) մերձ:

Բայց վասն բազում կոտորածի զօրացն եւ դժկամակութեան նոցա չէր ինչ նմա հնար հանել ի գլուխ զպատերազմն, մանաւանդ զի եւ բարեկամք Պոմպէի ի ծերակուտին ջանային զի նմա տացի առաջնորդութիւն զօրուն. յայն ամս դարձաւ Լուկուղղոս ի համբաւաւոր բուրաստանն իւր եւ ի մեծագանձ տաճարս իւր ի Հռոմ, (տարեալ ընդ իւր յ[illegible] զառաջին տունկ հակէք միրգոյ ի Կերասուս քաղաքէ Պոնտացւոց): Պոմպէոս այնուհետեւ առնոյր ըստ իւրում ցանկութեան զպարագլխութիւնն համօրէն մեծաւ իշխանութեամբ (67): Յետ միոյ յաղթութեանն առ Եփրատաւ՝ եդ Տիգրան դաշինս (66). իսկ Միհրդատ գնաց փախստեայ ի Բոսպորոս (65). եւ վասն ի ձեռաց Հռոմայեցւոցն ապրելոյ, քանզի իւր իսկ որդի Փառնակ յետս եկաց ի նմանէ՝ առնոյր զդեղն զոր միշտ կրէր առ իւր, բայց իբրեւ չզօրէր այն՝ վասն զի սովորեալ իմն էր ընդ այն՝ հրամայէր հարկանել միում յանձնապահացն. հրաման ետ Պոմպէոս թաղել զդիակն նորա ի շիրիմս թագաւորացն Պոնտացւոց ի Սինոպ (63): Մնաց Տիգրանայ աշխարհն Հայոց Մեծաց, բայց Պոնտոս եւ Բիւթանիա համօրէն Պափլագոնիաւ, Կիլիկիաւ եւ Պամփիւլիաւ; Ասորիք համօրէն Փիւնիկէաւ՝ նահանգք եղեն Հռոմայեցւոց, եւ եղե-

զինու թագաւորութեանն Սելեւկեանց. Գամրաց եկաց առանձինն թագաւոր. փառաւոր եւս զԴէյոտարոս մեծութեան վարձս (63)։

Նա եւ ի Հրէաստանի բարձ Պոմպէոս զպատիւ թագաւորութեանն ի միջոյ։ Այսպէս կարգեալ եւ յարդարեալ զիրս Ասիացւոց՝ եմուտ շքով եւ ճոխութեամբ ի Հռոմ, եւ վասն մեծապէս զաւրութեան եւ զօրէնս առաջնորդութեանն համարելոյ՝ ընկալաւ գովութիւն եւ զյաղթանակս իւրաւանդ եւ սիրեցին զնա քաղաքացիք (61)։

# 362

Զգտանէր արդեւք Պոմպէոս տեղի ձաղանաց իւրոց եթէ ընդ այն ժամանակս Մ. Տուղղիոս Կիկերոն հիւպատոն չարաչարեացանէր զՀռոմ ի կործանմանէն։ Սա էր ի տոհմէ նոր ազնուականաց[1] (ծն. 107), բայց տակաւ աստիճան յաստիճանէ եկն ել ի հիւպատոսութիւն։ Ընդէն առ ոքա հիւպատոսութեամբ Կատիլինա այր ժանտ եւ չարագործ անհնարին՝ որ ի ժամանակի հալածանացն առ Սուղղաւ բազում ինչ անօրէնութեամբ էր գործեալ, եւ յայնմ հետէ երկիցս ջանացեալ հիւպատոսութեան հասանել, եւ իբրեւ ոչ որպէս կամէրն եղեւ՝ եդ խորհուրդ ի մտի զհիւպատոսն եւ զսինկղիտիկոսս կոտորել եւ ապա զՀռոմ հրձիգ առնել. զաւմարեալ էր նա զաւնդ մի ի խորհրդակցաց իւրոց եւ ոչ ոք էր որ գիտէր ինչ զխորհուրդն որ մտօք առ կուրծս կայր (64)։

Սակայն Կիկերոն զգաց զիրսն ի ձեռն Փուղուիայ կնոջ եւ որոտայր ի վերայ նորա ի ծերակոյտն սաստիկ եւ ուժգին ճառիւք, մինչեւ ի դէպ համարեցաւ Կատիլինա խուսել ի քաղաքէ անտի։ Այլա եւս ունել Կիկերոն զոմանս ի մասնակցացն ընդ նմա եւ սպանանել, եւ Պետրէոս զօրավարաւն հարկանէր զԿատիլինա ի սաստիկ ճակատու որ առ Պիստորիա քաղաքաւ (63)։ Առ Կիկերոն անուն պատուոյ՝ «Հայր հայրենեաց»[2]։ Այլ վասն այսր ամենայնի զրգռեցաւ ընդ նա նախանձ փառաւորացն՝ որ եւ ժողովրդեանն թերին անէին։

Յարժամ յաղթութեամբ դարձաւ Պոմպէոս ի կողմանց Ասիացւոց՝ յամենայնի եւ ի բնաւ առաջին քան զամենեսեան նա երեւէր ի տէրութեանն, բայց կայր ինչ կողմն ի մէջ սինկղիտիկոսացն հակառակ նորա, մանաւանդ Կատոն Կրտսերն Ուտիկացի՝ որ բարեկամ եւ նախանձայոյզ էր առաքինութեան եւ ազատութեան, մինչեւ ինչ ինչ ի բանից Պոմպէի չելանէր ի գլուխ։

Իսկ նախանձորդ նորա եւ ոսոխ էր Գայիոս Յուլիոս Կեսար՝ յազնուական տոհմէ, շքեղ կերպարանօք, մեծատուն, զօրաւոր մտօք եւ գործովք, մինչեւ զոյգ երեւելի էր ճարտարխօսութեամբ եւ մատենագրութեամբ՝ որպէս զօրավարութեամբն եւ զինուորու-

1 Homo novus. 2 Pater patriae.

Կասսիոսի) որ եկեալ կայծակնահունս հրոյ, եւ բազումք եւս ի պատե-րազմողաց սպանին նոյնպէս անձինս անձանց, եւ ճակատամարտն առ Փիլիպպեաւ լինէր գերեզման ընկերհաշտութեան Հռոմայեցւոց (42)։ Վասնզի յայնմ հետէ ոչ վասն ազատութեան ինչ կռիւ էր այլ վասն տէրութեան եւ իշխելոյ։

Լինէր մեւս եւս նոր բաժանումն սահմանաց՝ առ. Անտոնիոս զարեւելս տէրութեանն, Օկտաւիանոս զարեւմուտս, Լեպիդեայ տուաւ Ափրիկէ, Իտալիա էր հասարակաց (40)։ Բայց իբրեւ Լե-պիդոս իւր առնուլ կամէր զՍիկիլիա, յանկոյց Օկտաւիանոս զզօրս նորա յինքն, եւ հարկ լինէր այնուհետեւ Լեպիդեայ ի բաց եղա-նել ի թուոյ արանցն երից, եւ մնացին արք երկու (37)։

Առանց արշաւանաց պատերազմացն զոր մղէր այնուհետեւ Ան-տոնիոս ընդ հզօր ազգացն Մարաց եւ Պարթեւաց եւ ընդ դրա-ցեաց նոցա (36—34), եւ վասն յաղթութեանցն զոր յաղթէր Օկտաւիանոս ազգաց ազգաց բնակելոց ի Դաղմատիա եւ ի Պան-նոնիա (35—33), ոչ այնպէս վաղվաղակի դրդուեցաւ նախան-ձաւորութիւն նոցա ընդ միմեանս։ Այլ իբրեւ Անտոնիոսն յղ-փացեալ ազգի ազգի անհարգութեանց տայր զանձն ընդ վաւա-շան դշխոյին Կղէոպատրայ, եւ զՀռոմէական նահանգս տայր պարգեւ նմա եւ երկուց որդւոց նորա, եւ զկին իւր զՕկտաւիա զքոյր Օկտաւիանեայ մերժէր յետս, եւ նովիմբք ա-տելի Հռոմայեցւոցն լինէր (33—32); մանաւանդ Օկտաւիանոս ընդ խնամուն զօրավարի նաւաց իւրոց Ագրիպպայ յանկուցանէր յինքն զժողովուրդն Հռոմայեցւոց առատութեամբ եւ խաղուք, առնէր մեծապարգեւ զզօրականն բաժանմամբ անդաց եւ ագարակաց, եւ ունէր զօրս եւ նաւս հանդերձ ի հրահանգս կրթութեան։ Ապա արկանէր Օկտաւիանոս զհամբաւ վասն գործոցն Անտոնեայ խո-րագիտութեամբ յիւր օգուտ ի կիր, եւ տայր ծերակուտին առ-նել վճիռ թէ անկեալ է ի պատուոյ իւրմէ Անտոնիոս, եւ յայտ արարեալ պատերազմ ընդ Կղէոպատրայ։

Արեւմուտք եւ արեւելք պատրաստէին ի մարտ պատերազմի ընդ միմեանս. յուսով տիրանութեանն Հռոմայեցւոց տայր Կղէո-պատրա ուրախութեամբ՝ արծաթ եւ տորմիղ նաւաց. դրդուէր հոյակապ նաւամարտիկ կռուն առ Ակտիոնիւ (31, 2 Սեպտեմբ.). ի կէս պատերազմին դնայր փախստեայ Կղէոպատրա եւ շամշեալն Անտոնիոս հասանէր տագնապաւ զհետ նորա. տորմիղ նաւացն, եւ յետոյ զօրն եւս ցամաքայինն որ առանց զօրավարի թողեալ լքեալ կայր՝ անց ի կողմն Օկտաւիանեայ յետ 7 աւուրց (31)։ Աճապարեալ Օկտաւիանոս զհետ նորա յԵգիպտոս եւ դիմեալ առաջի քաղաքին Աղեքսանդրացւոց. առաքէր Անտոնիոս պատ-գամ առ Օկտաւիանոս գալ ի մենամարտիկ կռիւ, եւ իբրեւ մեր-ժեցաւ՝ հանեալ ճակատեցուցանէր զզօրսն, բայց եւ նոքա անցին ի

կողմն Ալեքսանդրեայ: Ընդէն ընդ իւր տարեալ էր Անտոնիոս, եւ ինքն Կղէոպատրա սպան զանձն հարուածովք իժից՝ զի մի ածցի ի Հռոմ ի ձաղանս, քանզի զԱկտաւիանոս չկարաց արկանել ի հաւանս գեղոյ իւրոյ: Եգիպտոս նահանգ եղեւ Հռովմայեցւոցն (առաջին նահանգ կայսերութեան): Զքաւ եղեւ պատերազմին որ վասն տէրութեան աշխարհի էր, եւ ընկէր այնուհետեւ Ակտաւիանոս միահեծան տէր մեծի տէրութեանն Հռովմայեցւոց (30):

## 268

Հռովմայեցիք ձանձրացեալ յաղմկալի փոփոխմանց եւ ի կռուածէ, եւ ժողովուրդն հարեալ հատեալ ի նեղութեանց փայել՝ հացին իւրոյ եւ Կրկէսական խաղուց[1], ընկալան զշաղփաղն Ակտաւիանոս մեծաւ պատուով եւ փառաւորութեամբ: Զօրավարն[2] անուն եւ այլ Օգոստոսն անուն տուաւ նմա մշտնջենաւոր ժամանակօք. ինքն զանձն կոչեաց Կեսար (Կայսր), զոր պահեցին ամենայն յաջորդք նորա: Հաստատեաց ամբողջ զիշխանութիւն իւր մեծաւ զգօնութեամբ եւ խոհեմութեամբ, քանզի զհին կերպարանս իրացն պահէր անփոփոխ եւ չգործէր ինչ գործ բռնութեան: Կայ Հռոմայ ծերակոյտն իբրեւ խորհրդականութիւն տէրութեանն, եւ այր ես նորոգել ծերակուտին զպատիւ հիւպատոսութեան իւրոյ վասն տասն ամաց եւեթ, մինչեւ առ ժամ ցկեանս: Իբրեւ Զօրավար՝ Հռոմայ սպարապետ զօրուն, եւ առ ասկաւ ասկաւ զումարեաց յանձին իւրում զպատիւ հազարապետութեան, զպաշտօն համարակալութեան եւ զքրմապետութիւնն. եւ այր հաստատել իւր բաղում անգամ զգործակալուն իշխանութիւնն: Վասն զգուշութեան տէրութեանն եւ անդորր իւրոյ կարգեալ կացուցանէր զօրս պատրաստականս, գունդս անձնապահաց եւ զօր պահապան քաղաքին: — Ընդ ծերակուտին կացուցանէր նա առ յիւրաքանչիւր պաշտամունս, աւագերէցս եւ ատեանս դատաց նահանգացն:

Օգնական էին Օգոստոսի զօրավարն քաջ Ագրիպպաս եւ այրն խոհական եւ հմուտ քաղաքագիտին կարգաց Մեկենաս պաշտպանիչ գիտութեանց. Ժամանակ առաջնորդութեան Օգոստոսի է ժամանակ ոսկի դպրութեանն Հռովմայեցւոց:

Աշխարհակալութիւնքն որ առ Օգոստոսիւ եղեն՝ կարեւոր իսկ էին ի զգուշութիւն ներքին խաղաղութեանն եւ ի պահպանութիւն սահմանացն: Նախ իբր ամենեւին խաղաղացուցան հիւսիսակողմանքն Սպանիայ եւ կողմն արեւմտից Գաղիայ (25), եւ զբռնեցեալ հարաւային կողմանք Գերմանիա գետոյ, այս ինքն Պաննոնիա եւ Միւսիա (35 եւ 29), Հռետիա, Վինդելիկիա եւ Նո-

1 Panis et circenses. 2 Imperator.

## 370

### Հռովմէական մատենագրութիւն։

Ա. Ի հաղորդութենէ անտի Հռովմայեցւոց ընդ Յունաց եղեւ բազում ինչ ազդեցութիւն ի մատենագրութիւն եւ ի կեանս Հռովմայեցւոցն։ Օրն գործածք յունական ճարտարաց եւ զարմանալի մատենագրական ծնունդք յունական մտաց՝ որք անտ ի Հռոմ ի քաղաքաց անտի վանդելոց, զարթուցեալ գրգռեցին զմիտս եւ զյօժարութիւն ազնուագոյն իրիք մասին ազգին Հռովմայեցւոց։ Այս լաւագոյն մասն ազգին՝ որում գլուխ էին այրքն երեւելիք Սկիպիոնքն երկոքին, Մարկեղոս, Փղամինիոս եւ այլք՝ էին նպաստաւոր եւ վերաբերեալ յունական իմաստութեան եւ բանաստեղծութեան եւ արուեստի, ձեւն տաղին եւ պաշտպանէին զհանդէս Յունաց՝ բանաստեղծիցն նոցա եւ փիլիսոփայից, եւ ջանային ընդ ձեռակերտացն արուեստին՝ եւ զճարտարութիւն մտաց եւ զերպարտեալ ժողովրդեանն ածել զաղթականութեամբ ի Հռոմ։

1. Ի բանաստեղծութեան Հռովմայեցւոց՝ առաջին բանաստեղծական արուեստ հանճարի Լիւիոս Անդրոնիկոս յոյն այր՝ ստրկացեալ, որ եկն ընդ գերեայն ի Տարենտոնէ առ Լիւիոս Սալինատոր եւ մտեալ դաստիարակ որդւոց նորա՝ առ պարգեւ զազատութիւնն։ — Նեւիոս Կամպանիացի, որ զինուորեցաւ իսկ յառաջնում Պունիկեան պատերազմին՝ էր բանադործ եւ վիպասան. գրեաց զվիպասանութիւն Պունիկեան պատերազմին ըստ հին իտալական չափոյ եւ կատակերգութիւնս ըստ յունական օրինակին. բայց վասն համարձակ զաւագս Հռովմայեցւոցն թշնամանելոյ՝ մատնէր ի պատիժս բանտի եւ վտարանդութեան։ — Էննիոս (✝ 169) յոյն Կամպանիացի յազնուական տոհմէ, զինուորեալ ի լեգէոնսն Հռովմայեցւոց եւ բարեկամ Սկիպիոնեայ երիցու՝ սիրեալ եւ ընկալաւ իսկ զիրաւունս հռովմէական քաղաքացւոյ. համբաւոր յոյժ վիպասանութիւնն նորա վերջացեալ՝ անուանեալ Տարեգիրք[1], յորում զպատմութիւն Հռովմայեցւոցն նկարէ մինչեւ ցիւր ժամանակ՝ ըստ բանաստեղծութեան օրինի։ Դարձեալ միւս եւս վիպասանութիւն՝ վասն գործոց եւ արութեանց Սկիպիոնեայ երիցու։ — Պակուվիոս նորին քեռորդի Բրունդուսիացի եւ Ատտիոս (ժամանակակից մանկութեանն Կիկերոնեայ) գրէին ողբերգութիւնս եւ կատակերգութիւնս՝ ըստ ձեւոյ օրինակին Յունաց։ Յամենեցունց սոցա հազիւ հազ թէ սակաւ ինչ տողս այժմ ունիմք։

Նմին հակառակ ունիմք այժմ 20 հատուածս յԱտտոսէ Պղաւտոսէ (յառնէ ռամկէ Ումբրիացւոյ ✝ 184)՝ որ եղեւ հայր հռովմէական կատակերգութեան. հատուածքն նորա թէպէտ եւ բազում մասամբք ըստ նմանութեան պատկերացն Յունաց՝ Դիփիղոսի եւ

1 Annales.

յերկրորդ Գունիկեան պատերազմէն մինչեւ ցփոխիլ Մակեդո-նիայ ի նահանգ Հռոմայեցւոց (148)։ Սակայն եւ ի մեծայաղթ մատենէ առաւ զառաջին 5 գիրսն եւեթ այժմ ողջ ունիմք, իսկ ի մնացելոցն՝ հատուածս եւեթ։ Բայց է նա օրինակ եւ կաղապար այժմու նոր պատմագրութեան՝ պատճառախնդիր անուն¹։ Թէ-պէտ եւ չունի նա զյստակ ատտիկեցի լեզուն՝ սակայն է նորա ընդ այնր լուսաւորութիւն, սրութիւն մտաց, դատաստան առողջ, տեղեկութիւն քաղաքային եւ պատերազմական իրաց, անաչա-ռութիւն եւ սէր մեծ ճշմարտութեան, որովք համարի նա մի ի բուն մեծամեծ մատենագրացն հնոց։

3. Փիլիսոփայութիւն՝ եւ ճարտարախօսութիւն կէս ընդ նմ-անց ի Յունաց անցին ի Հռոմայեցիս. եւ տարածեցան ի նոսա մանաւանդ ճարտարախօսութիւնն, այնու զի կարեւոր էր այն վասն հրապարակախօսութեանց յանկերահաշտեաց առաջնորդութեան։ Ստոյիկեան փիլիսոփայութիւնն մանաւանդ եգիտ ընդունելութիւն ի Հռոմ՝ ի ձեռն Պանետիոսի Հռոդացւոյ բարեկամի Սկիպիո-նեանց, Լելիոսի եւ Պողիբիոսի. քանզի գործական նկարագիր այս փիլիսոփայութեան էր առաւել դիւրահաս գործականն Հռոմայ-եցւոյ քան զակադեմական փիլիսոփայութիւնն Կառնէադայ որ տայր զանձն ի տեսողութիւն², եւ տակաւ երթեալ մօտէր ի տա-րակուսութիւն, այնպէս զի Արկեսիլաս հիմնիչ միջին Ակադե-միայ՝ եկաց յուրանալ յամենայն ճշմարտութենէ. բայց Կառնէա-դէս այսպէս իմն մեղմացոյց զկարծիս նորա, թէ «վերջին սահմանք գիտութեան է նմանութիւն ճշմարտութեան, եւ պարտ եւ պատշաճ է շատանալ՝ թուելով զաստիճանս այնր նմանութեան ճշմարտութեան»։

Բայց քանզի ընդ յունական արուեստի եւ մատենագրու-թեան՝ մտանէր ի ներքս եւ փափկութիւն առանձին կենաց ի հանգերձս եւ ի կերակուրս եւ ի հասարակութիւնս կենաց, եւ եր-թայր ընկէցին անհետ հայրենաւոր բարք եւ վարք անարատք, չափաւորութիւն եւ խստամբերութիւն, յայն սակս ել եկաց կողմն մի ի Հռոմ որոյ գլխաւոր էր Պորկիոս Կատոն՝ կալ ընդ-դէմ նորոգութեանցն այնոցիկ։ Լինէր Կատոն համարձակ եւ մե-ծաւ խստութեամբ հակառակելով ընդ այնպիսեացն՝ տայր մեր-ժել հանել վտարանդի ի Հռոմայ զփիլիսոփայսն Յունաց (զԿառ-նէադէս ակադեմական, զԿրիտողաոս պերիպատետիկեան եւ զԴի-ոգենէս ստոյիկեան). վարժոցք ճարտարախօսութեան փակեցան, Ասկղեպիադէս բժիշկ ապականիչք բարուց եղեն պատուհասեալ, եւ եղան օրէնք հակառակ զեղխութեան եւ զարդուց, եւ ինքնին իսկ Կատոն գրէր գիրս վասն մշակութեան եւ վասն սկզբանց Հռո-մայեցւոց՝ կամեցեալ ցուցանել զլաւակեցութիւնն վարուց եւ զան-

1 Տես վերագոյն էջ 4։ 2 Spéculation.

պաճոյճ կեանս առաքինոյն։ Բայց սակայն այնու իսկ զի եւ Կատոն ի ծերութեանն ժամանակի սկսաւ ուսանել յունարէն՝ յայտ առնէ թէ չէր եւ հնար այնպէս սերտիւ յարել ի հինն եւ ի հայրենաւորս, այլ նմին հակառակ յառաջադէմ լինել հռոմէական մատենագրութեան ընդ նոյն նորոգ ճանապարհ՝ հասանէր ի դարն ոսկի՝ զոր ցուցցէ յաջորդս։

## 371

Բ. Վաղնջէ առ Եւգոստեաւ եւ յառաջ իսկ քան զնա շահեալ տիրէր յունարէն լեզու եւ մատենագրութիւն ի Հռոմ. մինչեւ բայց իսկ եւ սովորութիւն լինել էր մանկանց ազնուացն երթալ կրթել ի հռահանգս ճարտարխօսական դպրոցաց ի Յունաց աշխարհին եւ ի Փոքրն Ասիա։ Եւգոստոս եւ բարեկամք նորա Մեկենաս, Մեսսաղա եւ Պոլլիոն էին հմուտք մատենագրացն Յունաց՝ զորոց զմատեանն Եւգոստոս ժողովեալ եդեալ էր ի մեում հասարակաց մատենադարանին ի Պաղատինեան բլրին, եւ առատութեամբն իւրեանց լինէին օգնական մտաւոր յառաջադիմութեանն. բայց մանաւանդ խաղաղութիւնն էր ձեռնտու յառաւելն, քանզի Եւգոստոս եւ պաշտօնեայք նորա առաջնորդեալ վարէին զերկրին իւր աշխարհին, եւ հեռաւոր պատերազմունքն վճարէին ի ձեռն խոնարհագոյն զօրավարաց յանուն Եւգոստեայ. եւ յայն սակս լինէր պարապ քաղաքացեացն տալ այնուհետեւ զանձինս յընթեռնուլ եւ ի գրել։

1. Իրաւագիտութիւն եւ ճարտարխօսութիւն առաւել քան զամենայն ածան ի կատարումն ի ձեռն Հռոմայեցւոց՝ վասն գործական մտաց նոցա եւ միտութեան առ հրապարակական քաղաքային կեանս։ Ճարտարխօսութիւնն ամենեւին իսկ ընդմտեալ ի կեանս Հռոմայեցւոցն՝ համօրէն մատենագրութիւն նոցա արձակն եւ բանաստեղծականն՝ ներկաւ երանգօք ճարտարխօսութեան։ Իսկ իրաւագիտութիւնն թէպէտ եւ զկատարեալ յօրինումն ի ժամանակս կայսերացն ընկալաւ, բայց անդադար զգօնութիւնք առնէին ընդ պատրկաց ատեան նոցա ճշդիւ ընտրել եւ որոշել զբանս իրաւանց, եւ յօրինել օրէնս։ Միւսոյն կարգեալ էր ընդ գիտութեան քաղաքային իրաւանց՝ ճարտարխօսութիւնն, որ ի խառվայրոյզ ժամանակս ընկերհաշտութեանն եհաս ի ծայր բարձրութեան իւրոյ։ Նմին իրի հոյակապ ճարտարախօսք էին արքն քաղաքագէտք Անտոնիոս եւ Մուկիոս Սկեւողա որք ի Մարիոսեան պժտութիւնսն սպանան. հակառակեացքն ժողովրդեան որպիսի Գրակքեանքն էին, խօսնակք՝ որպիսի Հորտենսիոսն էր, եւ նախանձորդն նորա Մարկոս Տուղղիոս Կիկերոն ութ ամօք կրտսերագոյն քան զնա (Ծն. 107)։ Ի Հորտենսեայ սակաւ ինչ հատակոտորս եւեթ ունիմք. բայց ի ճառսն Կիկերոնեայ զոր ունիմք մեծաւ յա-

ճախոսութեանց՝ երեւի այլն ի խօսողութեանց, գեղեցկաբան ճարտարութեանց եւ արուեստի յանդիման կացուցանելոյ, բազում ճաշակօք, որովք մտէր եւ բեւեռէր իւր յինքն զբազմութիւն լսողացն: Օ՜ն մեծ մասն ճառից իւրոց յետ խօսելոյ հրապարակաարկանէր ընդ գրով՝ խառնելով զզարդն անոյ փոխանակ զօրութեան կենդանի բանիցն:

Յետ իրաւագիտութեանն եւ ճարտարխօսութեան առաւել քան զամենայն մտադիր էր Կիկերոն փիլիսոփայութեան: Բայց չյօրինեաց նա նոր ինչ բովանդակած, այլ զընտրականութեան[1] զհետ երթեալ՝ յուզեալ քննեաց զամենայն բովանդակածս փիլիսոփայիցն, եւ զխնամութիւնն Յունաց արար դիւրահաս հայրենակցացն: Բազում ժամանակս կայր նա տարակուսեալ թէ որ դպրոց նախամեծար քան զամենեսին առնիցէ, բայց ապա յետոյ ի գործականն՝ ընտրէր զստոյիկեան փիլիսոփայութիւնն, եւ ի տեսականն զմիջին կամ զերկրորդ Ակադեմիայն[2]:

Ի բուն երեւելի ճառից Կիկերոնի են յաջորդքս. ճառն "վասն Ռոսկեայ Ամերինոսի," զոր կամեցաւ արդարացուցանել յամբաստանութենէ սպանութեան. ճառքն "ընդդէմ Վեռեսայ," որ չարչարեալ էր զՍիկիլիացիսն ի ժամանակի անթիպատոսութեան իւրոյ. ճառն "վասն Մանիղեան օրինաց," որով առ Պոմպէոս զհրամանատարութիւն պատերազմին ընդդէմ Միհրդատայ. ճառք չորք "ընդդէմ Կատիղինայ" ճառն "վասն Մուրենայ," զոր կամէր արդարացուցանել յամբաստանութենէ՝ թէ յընտրութիւնսն կաշառաւ վարեցաւ. ճառն "վասն Արքիասայ պուետի," զի յարուցեալ էր հակառակութիւն վասն նորա թէ չունի իրաւունս քաղաքացւոյ. սքանչելի ճառն "վասն Միղոնայ," յաղագս ամբաստանութիւն կրելոյ նորա թէ սպանեալ իցէ զԿղոդիոս ի վերայ ապպեան ճանապարհին. ճառն "վասն Սեստիոսի," որ ջանացեալ էր նպաստ դառնալոյ Կիկերոնեայ յաքսորանացն՝ եւ ի կուսակցացն Կղոդեայ կրեալ ամբաստանութիւն. ճառն զոր ի ծերակուտին խօսեցաւ "վասն Մարկեղեայ," վասն դարձին յաքսորանաց. ճառն "վասն Դէոտարայ արքային Գաղատացւոց զորմէ ամբաստանութիւն լեալ էր թէ սպանութիւն խորհեալ է զԿեսարեայ. իսկ 14 "Փիղիպեան ճառքն," ընդդէմ Անտոնեայ՝ են պսակ ճարտարխօսութեանն Կիկերոնի: — Ի "հռետորական գրոց," նորա յորս զարուեստ ճարտարխօսութեանն ուսուցանէ՝ են նշանաւոր յաջորդքս. 1. երեք "գիրք զճարտարախօսէ". 2. "Բրուտոս կամ վասն երեւելի ճարտարախօսաց". 3. "Ճարտարախօսն," որ է գրեալ առ Բրուտոս. 4. վասն քաջաց ճարտարախօսացն յորում զԱտտիկեցի ճարտարխօսութիւնն նախամեծար քան զԱսիացի (յոյն) ճարտարխօսութիւնն առնէ:

Ի փիլիսոփայական գրոց նորա են երեւելի. գիրք "վասն ընկերհաշտութեան," յորում ի հանդէսի անցուցեալ քննէ թէ որ կերպարանք առաջնորդութեան քաջ քան զամենայն իցէ, եւ համարի քաջ քան զամենայն ղհռոմէական առաջնորդութիւնն որ յառաջ քան զժամանակս Գրակքեանցն էր. եւ վախճան գրոցն առնէ մեւս եւս ինչ գրովք որոյ անուն "Անուրջք Սկիպիոնեայ," յորում ցուցանէ զընդունայնութիւն ա-

1 Eclecticisme. 2 Տես վերագոյն էջ 477:

մենայն մարդկեղէն իրաց։ "Ցուսկուղանեան խնդիրքն„ որ են մտածու-
թիւնք եւ կարծիք վասն մեծամեծ խնդրոց մարդոյն՝ զմահուանէ, զան-
մահութենէ, զէութենէ ոգւոյն, զաստուածոց եւ զայլոց նոյնպիսեաց։ Ի
խօսսն "վասն գլխաւորական բարութեան„ եւ "գլխաւորական չարեաց„
յանդիման կացուցանէ զկարծիս Յունացն փիլիսոփայից վասն ճշմարիտ
երջանկութեան եւ վասն վախճանի կենաց՝ առանց մուծանելոյ յանձնէ
վճիռ ինչ ի ներքս։ "Ակադեմական խնդիրսն„ ճառէ զվարդապետու-
թեանց Հին եւ Նոր Ակադեմեայ, եւ ի գիրսն "վասն բնութեան աս-
տուածոց„, "վասն ըղձութեան„ եւ "վասն ճակատագրի„ (որ ոչ ամ-
բողջ է) տայ կարեւոր կարեւոր ակնարկութիւնս վասն կրօնական խոր-
հրդոց ժամանակին իւրոյ։ Գիրքն փոքրիկք՝ "Կատոն կամ վասն ծերու-
թեան„ եւ "Լելիոս կամ վասն բարեկամութեան„ երեւելի են գեղեց-
կութեամբ բարբառոյն եւ պատշաճ յօրինմամբ։ Ի պարբերս հասակի
գրեաց զգիրսն "վասն պարտուց„ առ Մարկոս որդի իւր որ ուսանէր
յԱթէնս, յորում ցուցանէ թէ որպէս պարտ իցէ վարել այր քաղա-
քացի յայլ եւ այլ հանգամանս քաղաքային կենաց, եւ լի է մտաւոնն
գեղեցիկ եւ զարմանալի բարոյական սկզբամբք։

Նաեւ ի սոցանէ կան Կիկերոնեայ թուղթք բազում յոյժ թուով՝
գրեալ առ բազումս՝ մանաւանդ առ բարեկամն իւր Պոմպոնիոս Ատտի-
կոս եւ առ Բրուտոս եւ առ եղբայր իւր Կուինտոս, յորս խառն են եւ
թուղթք առ Կիկերոն։ Այս թուղթք ոչ միայն ճարտարագոյնս նկարեն
զներքին հանգամանս խառնակեալ ժամանակին այնորիկ՝ մինչեւ բազում
անգամ առաւել եւս մեկնութեան պատմական ինչ դիպաց լինել, այլ
եւ ցուցանեն զայրն հայեակայ զԿիկերոն ամենեւին ըստ ներքին բնու-
թեանն. երբեմն ի նոսա Կիկերոն տանուտէր հաւատարիմ տան իւրոյ,
բարեկամ մտերիմ եւ հեշտաբարոյ ընկեր առհասարակ ազնուականացն՝ որոց
հաւասար իմն կամէր լինել շքեղ առաջք ի գիւղս, մերթ որովք գործոց
ճարտարացն եւ բազմախորհուրդ ստացուածք՝ որոց հաճոյք իմն հանդարտ
էին բանք ճարտար մտաց եւ խօսք օգտակարք յուսումն. երբեմն դար-
ձեալ այր գործոյ, ժիր եւ վաստակաւոր, սակայն զփառս եւ զպատ-
ւքն պատիւ համարի նա ի վեր քան զամենայն ինչ. գովութիւն կամ
սոգսանք որ յայլոց ի նա լինել իցեն՝ յաղեն եւ շարժեն զնա յոյժ, եւ
ինքն առաւել իմն քան զչափն հաճեալ ընդ ինքն՝ անձնասիրութեամբ
լինի քարոզ ճարտարախօս պարծանաց իւրոց. եւ հանապազ իսկ ասել՝ է
լի ձրիւք՝ այլ առանց քաջասրտութեան եւ բարոյական հաստատութեան։

2. Ի պատմագրութեան յետ տարեգրութեանցն սկիզբն առ-
նէին Հռոմայեցիք գրել պատմական յիշատակարանս՝ յորս նշանա-
կէին զերեւելի երեւելի անցս գործոց քաղաքութեան առանց ամաց
կամ զիւրեք իւրեք արշաւանաց պատերազմի։ Այսպիսի մատեանս
յօրինեցին Լուտատիոս Կատուղոս, (ընկեր Մարիոսի ի պատե-
րազմին Կիմբրացւոց) Էմիղիոս Սկաւրոս այր սենեկապետիկոս (որ բա-
զում ինչ վճարեաց ի պատերազմին Յուգուրթայ), Սուղղա եւ տա-
պեան մեծատուն Տիտոս Պոմպոնիոս Ատտիկոս՝ բարեկամ Կե-
սարեայ եւ Կիկերոնի. ի սոցանէ սակաւ ինչ եւ կամ ոչինչ այժմ
ունիմք. միայն յիշատակարանքն Յուլիոսի Կեսարեայ որ վասն գա-
ղիական եւ քաղաքային պատերազմին են՝ կան պահին, եւ են գե-

զեցին ինչ յիշատակարան մնաց նորա (իսկ դպրութիւնքն ժամ Աղեքսանդրացւոց, Ափրիկեցւոց եւ Ասպանիացւոց պատերազմի՝ յայլոց գրեալ են եւ մասամբ միով ի Հիրտիոսէ)։ Կրիսպոս Սալուստիոս Ամիտեռնացի (86—35)՝ բարեկամ Կեսարեայ՝ գրեաց ըստ օրինակի նմանութեան Թուկիդիդեայ՝ զպատմութիւն Յուգուրթեայն եւ Կատիղինեան պատերազմացն նկարելով զպարզ բարս ժամանակին. բայց սակայն եւ ուր իսկ բարք չէին մաքուր բանից իւրոց՝ այնու զի որպէս յառաջ քան զմատենագրութիւնն էր ներդիչ եւ լլկիչ Նումիտացւոց նահանգին ի ժամանակի կուսակալութեանն՝ նոյնպէս յետ այնորիկ համբաւի իբրեւ զեղծ բարուք։ — Կոռնեղ. Նեպոս բարեկամ Կիկերոնեայ՝ գրեաց զկարարանց երեւելեաց, եւ ուր Ատտիկոսեան զանուր եւ զգեղծ կերպարանս ցուցանէր՝ սա զպայծառ եւ զազնուական կողմն նկարէ։ Երեւելի է մատեանն նորա մաքրութեամբ ոճոյն եւ յստակութեամբ բարբառոյն եւ ընտիր ասացուածիւն։ — Սորին ժամանակակից Տիտոս Լիւիոս (59 նախ քան զՔրիստոս մինչեւ ց17 յետ Քրիստոսի) դատախազակ ի տան Օգոստեայ՝ գրեաց զկատարեալ պատմութիւն Հռոմայեցւոց զարդարեալ ճարտարախօսական եւ բանաստեղծական իմն պայծառու ի 142 դպրութիւնս (յորոց 35 եւեթ կան պահեալ)։ Ի սմին մատենի չառնէ ինչ Լիւիոս այնչափ փոյթ քննական ճշդութեամբ եւ ամենեւին պատմառախնդիրն օրինակաւ կարգել պատմութիւնս, այլ զբօսեցուցիչ իմն եւ հրապուրիչ նկարագրօք ձգել յինքն զընթերցօղն, եւ նովին իւր իսկ եղեւ այն Հռոմայեցւոց առհասարակ իմն մատեան պատմութեան. եւ է փախճան պատմագրին բարբառել զսէր հայրենեաց, եւ զարթուցանել զՀռոմայեցիսն ի յիշատակս քաջութեան նախնեաց իւրեանց եւ կանգնել ընդդէմ յապականութենէ մտաւոր ժամանակին՝ օրինակաւ լաւագոյն ժամանակացն որ անցեալ զառանցեալ էին։ — Իսկ յայն պատմագիրն Գիոդորոս Սիկիլացի՝ առ. ժամանակօք Կեսարեայ եւ Օգոստեայ գրէր "զՊատմական մատենադարանն,, իւր՝ որ են տիեզերական ինչ պատմութիւն ըստ կարգի ազգաց ի բուն վաղ ժամանակաց մինչեւ ցամն 60, ի 40 դպրութիւնս (յորոց այժմ 15 եւեթ կան)։ Գիոդորոս չէ ի կարգս երեւելի պատմագրաց՝ այնու զի առանց դատաստանի եւ քննութեան խառն ի խուռն զամենայն իսկ զանհաւանութեան եւ զառասպելական զրոյցս առաջնոցն մատենագրաց ճշդիւ մի ըստ միոջէ համեմատէ ի մատենի, եւ ի կարգի անդ պատմութեանն՝ խառնակ եւ շփոթ իմն է, եւ յայն սակս իսկ պարզ եւ պատշաճ է մեծաւ զգուշութեամբ փորել նովաւ։ — Երեւելի եւ առաւել քննական քան զայն է մատեանն "Հռոմէական հնախօսութեան,, Դիոնեսեայ Հալիկառնացւոյ՝ (որ էր յայն յաղէ եւ բնակեալ ի Հռոմ) ի 20 դպրութիւնս (յորոց 9 ազդ ...

եւ Ձ՝ կիսով եւեթ), եւ համանէ պատմութիւն նորա մինչեւ ցմերժումն Տասն արանցն: — Իսկ 500 մատեանքն Տերենտեայ Վառոնի (ծն. 116) վասն այլ եւ այլ իրաց՝ մանաւանդ վասն հնութեանց Հռովմայեցւոցն՝ չեն ի միջի բաց յերից գրոց վասն մշակութեան եւ ի 6 դպրութեանց որ վասն հռովմայեցի լեզուի են (որք ի բնէ 24 դպրութիւնքն լեալ են):

3. Հռովմէական բանաստեղծութիւն եհաս ի ծայր կատարելութեան ի ձեռն Վիրգիլեայ (+ 19), Որատիոսի (+ 8) եւ Ովիդեայ (+ 17 յետ Ք.Ք.): Վիրգիլիոս Մարոն Մանտուականին՝ ըստ օրինակի նմանութեան Հոմերայ նկարէ զանցս եւ զնեղութիւնս ճանապարհորդութեան Էնեայ յետ կործանման քաղաքին Տրովացւոց, եւ զգնալն ի ծովեզերս Լատինաց, եւ յետ այնորիկ կազմէ ընդ նմին զհիմնարկութիւն քաղաքին Հռովմայ եւ զփառաւորութիւն Յուլեան ցեղին (Օգոստեայ) սերելոյ ի Յուղեայ Էնեայ որդւոյ: Այս գործ որ գեղեցիկն է բարբառովն, եւ ճիշդ նկարագրօք վայրաց եւ քաղաքահնչիւն՝ ըստ յօրինմանն, կամէր տակաւին ուղղել իւր իւրք, այլ արգել զնա մահն տարաժամ: Իսկ Ընդէորդականքն նորա որ ոչ ինչ ընդ հատ քան զնոսա գեղեցիկ են՝ յօրինեալ են ըստ օրինակի նմանութեան Թէոկրիտեայ[1]. բայց քանզի չէր հնար նմա ըստ օրինակի Թէոկրիտեայ զպարզաբան ռամկին արկանել ի նոսին ի կիր՝ այլ կրթեալ բարբառով յօրինէր զնկարագիր անպաճոյճ եւ զանարատ կենաց հովուութեան՝ յայն սակս ի մէջ ձեռաց եւ նիւթոց Վիրգիլեան Ընդէորդականացն զգացեալ հակասականութիւն իմն է. մանաւանդ զի եւ ազգն հռովմէական չզգայր ինչ այնչափ զհրապոյրս խաղաղ հովուական կենացն: Այլ նմին հակառակ՝ Մշակականք նորա ի 4 գիրս՝ ոչ միայն ըստ ձեւոյն է գործ ճարտարագործ անհամեմատ գեղեցիկ եւ արուեստական, այլ եւ նիւթն եւս է բուն ազգային եւ ըստ մտաց եւ յօժարութեան հասարակաց: — Որատիոս Փղակկոս հզօրագոյն եւ յաջողակագոյն քան զնա՝ այլ ոչ յստակ եւ պարզ իբրեւ զնա, էր այր կենցաղասէր եւ փիլիսոփայ ըստ վարդապետութեան Արիստիպպեայ[2]: Մեկենաս՝ բարեկամ նորա եւ ձեռնտու ետ նմա անդս յերկրին Սաբինացւոց, ուր գրէր զմեծ մասն Նուագացն իւրոց (ըստ օրինակի նմանութեան Աղկեայ եւ Սափփոյ[3]), զհեգնութիւնս եւ զբանաստեղծական թուղթսն: — Ովիդիոս Նասոն էր թերեւս աջողագոյն քան զամենայն պոէտս Հռովմայեցւոց, բայց թեթեւամիտ քան զամենեսին: Էր նա յառաջագոյն կցորդ կենաց երեւելեաց զխանց ժամանակին իւրոյ, մինչեւ յանցանօք ինչ որ ոչ ծանօթ են՝ աքսորէր ի Սկիւթաստան առ Պոնտոս ծովու, եւ անդէն զկեանսն վախճանէր: Ծանօթք քան զամենայն գործս նորա են՝ Խաղք կանանց պչրացողանցն, Այլակերպութիւնքն՝ յորս

1 Տես վերագոյն եջ 475: 2 Տես Հատոր 388: 3 Տես վերագոյն եջ 416:

գիրօնական աւանդութիւնս Յունաց եւ Հռոմայեցւոց զար-գարէ գեղեցիկ պատմութեամբք, եւ յետոյ զամենայն հանէ ի փառաւորութիւն Յունական ցեղին (Աւգոստեայ), եւ "Ենէա-կանքն,, նորա՝ այս ինքն Թուղթքն զոր ի Պոնտոսէ գրեաց ի Հռոմ:

Յաշխարհանաց քանաստեղծութեան՝ նմանելով քանաստեղ-ծիցն Աղեքսանդրացւոց՝ դրեցին Կատուղղոս (ծն. 86) Վերոնացի, Տիբուղղոս (ծն. 54), Պրոպերտիոս (ծն. 40):

Ընդհանրական իսկ նկարագիր ոճոյ ընտրեն Հռոմայեցւոց քանաստեղծք՝ ի Յունացն քանաստեղծից այն է, զի ի գործս Հռոմայեցւոցն քանաստեղծից առաւել արուեստ մաքրութեան է ձեւն քան եթէ նիւթն. քանզի Հռոմայեցիքն ամենեքին հա-ռեալ ի սէր ճարտարախօսութեան՝ մանաւանդ ուշ ունէին ողոր-կութեան եւ զարդու յօրինմանն, քաղցրաբարբառ հնչման բա-նիցն եւ դաշնակաւոր իսկ չափոց՝ քան եթէ խորութեան իրացն եւ ստուգութեան ցնորիցն եւ բարձրութեան խորհրդոցն:

4. Ի գեղեցիկ արուեստս ոչինչ առանձնին սեպհական բերին յառաջ Հռոմայեցիքն: Անդրիք եւ նկարք նոցա յօրինեալ էին ի ճարտարացն Յունաց: Այլ նմին հակառակ երեւի մեծագործու-թիւն Հռոմայեցւոցն ի շինուածս իւրեանց, ի Ջրմուղս, ի ճանա-պարհս, ի պողոտայս եւ յայլ եւս նոյնպիսիս: Կանգնեցին նոքա բաղանիս, թէատրոնս եւ մեհեանս, յորոց մի եւ Ամենադից մե-հեանն[1] էր զոր Ագրիպպայն ետ շինել՝ որ է այժմ մի ի մեծամեծ զարդուց Հռոմ քաղաքի. եւ այնչափ կերպարանափոխ եղեւ քա-ղաքն այն՝ մինչեւ ասել Աւգոստեայ թէ՝ Աղիւսեայ գտի զՀռոմ եւ թողում կճեայ:

## 372

Բարք եւ առանձին կեանք Հռոմայեցւոց:

Ինչք եւ մեծութիւնք որ յետ Պունիկեան, Մակեդոնական եւ Ասորւոց պատերազմացն աճեն ի Հռոմ՝ ամբաւ իսկ եւ առանց չափոյ էին, եւ յայն սակս գործեցին փոփոխութիւն ի բարս եւ ի վարս Հռոմայեցւոցն: Նշխեւրի տոհմք Հռոմայեցւոցն որ միանգամ լեալ էին միջամուխ ի պատերազմունս եւ ի քաղաքային իրս ի-բրեւ զօրավարք կամ առաջնորդք՝ այնչափ կուտեցին մթերեցին գանձս, զի եւ վատնել խակ յանխնայ կարող էին: Փոխեցին նոքա զփոքր տնկունս իւրեանց ի մեծամեծ ապարանս՝ գեղեցիկ գեղեցիկ բուրաստանօք. անդ ժողովեալ զեռեղէն ընտիր ընտիր սպաս-տան, անդրիս եւ պատկերս յափշտակեալս ուստէք ուստէք, զդոյզնագիւտ ինչ իրս յայլ եւ այլ աշխարհաց: Կանէին իւրեանց անդաստանս մեծատարածս[2], եւ կազմէին ամառանոցս[3] մեծա-շուք փառաւորութեամբ: Բայց մանաւանդ կանայք Հռոմայեցւոցն

1 Pantheon. 2 Latifundia. 3 Villa.

(առ որոց առաւել հաճոյականութիւն էր նոցա քան առ Յունաց) ամենեքին ի ծայր զեղխութեանն հասեալ էին եւ ի զարդասիրիկ անընչանս, եւ յորժամ Կատոնն չափ իմն զարդուց եւ փառաւորութեան հանդերձից նոցա կամեցաւ դնել, արկանելով առաւելագոյն տուրս ի վերայ նոյնպիսի զարդուց՝ յուզեցին խռովութիւն մեծ, մինչեւ դարձուցանել յետս զօրէնսն։ [illegible] գտանեմք գերեաց լինելին զատունս նոցա. բիրտ եւ կոշտ իմն վայրենի բնակիչք Սարդինիայ եւ Կորսիկայ էին դիւրագնի, եւ վարէին զնոսա յանարգ սպասաւորութիւնս. ուր նմին հակառակ կիրթ եւ մեղկ Յոյնքն եւ Ասիացիք գնեալք մեծագնի՝ էին դպիրք, ընթերցիչք, դաստիարակք, հաշուապահք, եւ սպասաւորք տանց նոցա։ [illegible] ժողովրդոյ արծաթ ի դոյն՝ չէր մարթ ուշ ունել խրատուց եւ արդարութեան, եւ յայն սակս իսկ ստէպ զկաշառառութեան լինելոյ, զծուլութենէ եւ զհարստահարութենէ մեծամեծացն Հռոմայեցւոց լինէին բանք։ Խոռոչ իմն էր Հռոմ որ ոչ լնոյր գանձուք, եւ ընդ զեղխութեանն եւ վատնութեան ստէպ երեւէր կարօտութիւն եւ չքաւորութիւն միանգամայն։

Ի մեծամեծաց անտի անց ապականութիւնն ի ժողովուրդ անդր։ Դրթայքն եւ անհետ լինէին տակաւ այն հին անպաճոյճ կեանք եւ աշխատաւոր վաստակք մշակութեան երկրի։ Այս նորագոյն Հռոմայեցիք քան զքաղաքային գործս առաւել նախամեծար ընտրէին զզինուորութեան կեանս, որ յետ վաստակոց ինչ ածէր վայելս եւ աւար բազում։ Եւ զինուորք յայն զօրավար ի զօրավարացն կամէին մանաւանդ յարել՝ որ զցանկութիւնս նոցա լնոյր. եւ զօրավարն նոցա դարձեալ կարեւոր համարէր ձգել զնոսա զիւրեւ զի ի ժողովս քաղաքացեացն նպաստ լինիցին ամբառնալոյ նմա ի պատիւս եւ ի պաշտամունս, եւ յայն սակս իսկ անտես իմն առնէին զօրավարքն զանկարգութեանց զօրացն։

. . . .

Հասարակաց խաղք եւս Հռոմայեցւոցն յայտ առաւել ցուցանէին զնուազութիւն հրահանգաց մտաց նոցա։ Ուր հասարակաց խաղքն Յունաց էին խթան եւ գրգռիչ ի գործս մեծամեծս եւ յաղթութեան վաստակս, նմին հակառակ Հռոմայեցւոցն խաղք գազանամարտից եւ կռիւք սուսերամարտակաց էին միայն առ զբօսանս աչաց ի բրտագոյն եւ ի վայրենի իրս՝ որովք զուարճանայր ազգն այն զինուորական։

Ի խաղուց անտի որ ի կրկէսին լինէին՝ էին մանաւանդ սիրելի Հռոմայեցւոց կռիւք գազանացն եւ նաւամարտիկ կռիւ՝ որ լինէր յետ լնլոյ զկրկէսն ջրով։ Իսկ յամփիթէատրոնսն լինէր կռիւ սուսերամարտակաց։ Սուսերամարտիկքն կամ ի գերեաց եւ ի յանցաւորաց դատապարտելոց էին եւ կամ յայնցանէ որ ինքնակամ տային զանձինս զի վայելեսցեն աւուրս ինչ ի կերակուրսն սնուցիչս եւ առատս՝ զոր տային նոցա զի իցեն առաւել արիաջանք. եւ կայր իսկ հրապարակաւ մարտապագար՝ որ կրթէր զնոսա եւ երբեմն ունէր հարիւրաւորս իսկ ի նոցանէ։ Յորժամ կամէր ոք ի ռամկավարացն տալ խաղս ժողովրդեանն կամ ի

տանս տուրք եւ կամ ի գիտՀանութեան ատրուք եւ կամ ի մանկանց ի պատուիրս ինչ՝ առնելոյ նա վարձու ի մարտայարդարէ անտի զոյգս զոյգս սուսերամարտկաց, բազում անգամ Հարիւրաւոր իսկ զոյգս, զի ի մարտնչելն նոցա՝ զբօսանիցի ժողովուրդն: Իւրաքանչիւր այր ի սուսերամարտկաց անտի ցայն վայր կռուէր՝ մինչեւ մին ի նոցանէ խոստանայր թէ պարտեցաւ. յետ այնորիկ անկեալ դնէր սա յաւազի անդ խոնջ եւ թաթաւեալ արեամբ, եւ եթէ ոչ աղաչելով կարկառէր նա զձեռն իւր՝ Հարկանէր իսկ զնա յաղթողն ի մահ:

Ամուսնութիւնք կերպակրոյ էին գրեթէ ըստ Աթենացւոց սովորութեան, միայն զի առ Հռոմայեցւոց ներղաշնակից էին արանց եւ կանայք, բայց արքն ձախողն յենուին ի բարձն, այլ կանանց պարտ էր նստիլ ուղղորդ:

Քաղաքացիքն կամ ազատքն եւեթ ունէին ընտանեկան իրաւունս՝ որոյ Հիմն էր ամուսնութիւն: Բուն նախնական օրինակ ամուսնութեան կատարէր առաջի քրմապետին յանդիման 10 վկայից, քուրմքն մատուցանէին զոՀս, եւ ընդամիջեալ կարէին քաղցր ինչ՝ զոր ուտէին փեսայն եւ Հարսնն [1]:

ԳիտՀանութիւնն էր այլ եւ այլ իմն ըստ չափոյ գոյից: Զգիտսին լուանային ջերմ ջրով. օծեալ զնա եւ զգեցուցեալ զձորձն պշրեքան զամենայն ձորձս նորա՝ դնէին ի դագաղս. բազում անգամ մեռելոյն գիւղարՀաւան դնէր դրամ ի բերան մեռելոյն զի տացէ զնա Քարոնեայ յանցուցանելն զնա նաւակաւ ի սանդարամետան՝ ընդ գետն Ստիւքս: Առաջի դրան ապարանիցն անկէին սոսնոճի, զի մի քուրմ ոք ի ներքս մտեալ պղծիցի: — Մեծատանցն դիակունք յօթերորդում աւուրն լինէին յուղարկեալ Հրապարակաւ. երաժշտականք եւ որ զնշանս պատուոյ վախճանելոյն եւ զպատկերս նախնեաց նորա տանէին՝ ընթանային յառաջոյ, զկնոյս նոյն՝ դին ի շքեղ դաՀոյս, եւ զՀետ նորա ընտանիք մեռելոյն ի Հանդերձս սգոյ, այս ինքն՝ արք ի պատմուճանս սեւս եւ կանայք՝ ի Հանդերձս սպիտակս: ԶՀետ անկեալ երթայր եւ բազմութիւն Աղաղակող տանն, եղերամարք եւ խաղալիկք: Հասեալ չան ի Հրապարակն՝ անդ ոմն ի ջերմոց անտի վախճանելոյն խօսէր զգովութիւնս նորա. ապա ելեալ ըստ քաղաքն Հասանէին ի անդի գերեզմանաց ընտանեացն, եւ անդ այրէր դիակն ի խարուկի զարդարելոյ, յոր եւ եւս եւս անուշունս ցանէին: Ոսկերքն եւ աճիւնն ամփոփէին ի սափորս՝ զոր ի գերեզմանս անդ դնէին կանգուն:

1 Confarreatio.

ղաքին։ — Համօրէն տէրութեանն էին 18 նախարարութիւնք, եւ օրինակ առաջնորդութեանն միահեծան խառն ընդ ազնուապետութեան, զի կայր խորհրդականութիւն ինչ ի մեծամեծաց առընթեր թագաւորին։ — Իսկ քաղաքք յունական եւ մակեդոնական գաղթականութեանցն որ սփռեալ էին զրեթէ ընդ ամենայն ընդարձակութիւն պետութեանն՝ վայելէին բազում ժամանակս յազատութիւնս մեծամեծս եւ ի շնորհս, քանզի զգուանօք իսկ ունէին զնոսա յաճախ թագաւորքն Պարթեւաց վասն զաձուցանելոյ զխորհուրդս նոցա ի դրացի ազգակից թագաւորութենէն Սելեւկեանց. եւ յայն սակս իսկ ի դահեկանս նոցա՝ զոր Յոյնք իսկ հատանէին՝ անուամբ իւրեանց թագաւորքն անուանէին մակադիր՝ Հելլենասէր կամ Յունասէր[1]։

## 374

Սակայն թագաւորքն Սելեւկեանք չէին տակաւին յուսահատ յաշխարհաց անտի, եւ ստէպ փորձ փորձէին ի ձեռն Յունաց գտանել մուտ եւ տիրել միւսանգամ կողմանցն։ Նւ յայն սակս իսկ՝ թէպէտ եւ վաղ պարտեալ էր Սելեւկոս Կալինիկոս (238) եւ յետուստ Անտիոքոս Թէոս ի նեղ անկեալ՝ դնէր դաշինս խաղաղութեան (յամի իբրեւ 210) ընդ Արշակայ Գ. սակայն եւ այնպէս Դեմետր Բ. Նիկանովր հրաւիրեալ ստէպ ի Յունաց անտի, եւ զի զօր եւս պիտոյ էր նմա ընդդէմ Տրիփոնեայ՝ անցանէր (յամի 140) ընդ Եփրատ եւ ընդ Տիգրիս գետս, եւ առնէր իսկ ի նմա գաւառս բազումս։ Իբրեւ զայն լսէր Արշակ Զ. առաքէր զօրավար ի վերայ՝ որ եկեալ հարկանէր զզօրս նորա եւ ածէր զնա ձերբակալ առաջի Արշակայ, եւ նա տայր արկանել զնա ի շղթայս[2]։ Թէպէտ եւ զառաջինն շղթայեալ զնա Արշակ այնպէս ի կալանս ընդ ամենայն նահանգաւ՝ որ ի նմին անկեալ էին՝ այլ յետոյ պահէր զնա ի դիպահսւոց թագաւորաբար առնել նմա կենութեան զդուստր իւր զՌոդոգունէ։

Այլ իբրեւ եղբայր նորա Անտիոքոս Է. Սիդեցի գումարէր միւսանգամ վարժ զօրսն եւ հարկանէր յաղթութեամբ զՊարթեւս, եւ յարեցուցանէր յինքն գաւառս բազումս՝ յայնժամ եւ Արշակ Է. կամ Փրաատէս Բ. (136 — 127) խորամանկութեամբ արձակէր զԴեմետր Նիկանովր՝ զի առնելոցի Անտիոքոս զասանոյ յետս յԱսորիս, պաշտպանել աթոռոյ իւրում յեղբօրէ Դեմետրի։ Այլ իբրեւ Անտիոքոսն (յամի 131) խորհրդեամբ պարտեալ սատակէր՝ առաջնորդութ Արշակ զի արձակեաց զԴեմետր, եւ զօրս ուղարկեալ առաքէր գունդս հեծելոց զհետ՝ ըմբռնել զնա, քանզի վաղ հասեալ էր նա ի թագաւորութիւնն Ասորւոց։

1 Φιλέλληνος.   2 Ա. Մակ. ԺԴ. — Ա.

աշխարհին. որպէս Արշամ անգ անուն յԱրշամաշատ՝ ի Ծոփաց աշխարհին (յամի իբրեւ 245), եւ Քսերքսէս մի ոմն ի սպայապե-տաց նորա (170—160), որոց կան դահեկանքն [illegible] ինչ խուրիւ Հայոց[1]: Յայսպիսում պատահականութեան եւ ի խառնա-կութեան ժամանակի դիւրաւ մտանէր մեծն քան զամենայն թա-գաւորս Պարթեւաց՝ Արշակ Զ. թափել զՀայաստան ի Սելեւ-կեանց՝ որպէս հաւանութեան թուի՝ յառաջ քան զպատերազմ զոր եաց Արշակ ընդ Դեմետրի Բ. յամէ 141[2]: Խորհեալ վասն հաստատութեան տէրութեան իւրոյ[3] կարգէր նա սորին թա-գաւորութիւն ի Հայոց աշխարհին իբրեւ պատուար նախապա-րիսպ տէրութեան իւրոյ ի մէջէ հարստութենէ, եւ կարգէր զեւրոյոյն կրտսերագոյն եղբայր զՎաղարշակ Ա. ի թագաւորու-թիւն Հայոց մօտ ուրեմն յամս 150 — 145:

## 376

Վաղարշակ որ առաջնեւյն ըստ եղբօրն մեծաց էր՝ քաջու-թեամբ եւ իմաստութեամբ միաբանականցն արկանէր զհիմունս տէրութեանն:

Մորփիւղիկէս ոմն ի պայազատացն Արշամայ ի թագաւորու-թեանն Ծոփաց՝ ժողովեալ զունդ ի Պաղիկացւոց, Պոնտացւոց, Փռիւգացւոց եւ Մաժաքացւոց, որ առաւելին միաբանեալ կային ընդ Սելեւկեանսն՝ հասանէր ի կողմանս արեւմտից հիւսիսոյ Հայ-աստան աշխարհին: Ժողովեալ կուտէր Վաղարշակ զօրս յայլ եւ այլ ցեղից բնակելոց ընդ երեսս աշխարհին՝ եւ զունդ զօրձեալ խաղայր ի հարաւոյ ի վեր առաւելապատրաստելով առաւել զզօրս, ընդ գլխաւորութեամբ արանց քաջաց ցեղին իւրեանց, յորոց երեւելի մանաւանդ Բագարատ էր զՆդրանիկ զետով առ Արշակին բերով բանակ հարեալ՝ առաւել բաղդեալ հանէր ընդ հարհանգ զպատգամութիւնն՝ որ մանաւանդ կիրթ էր յառաքինականութիւն քան ի Ճակատս եւ ի հնազանդութիւն առն ապարասպետի[4]. առա զզգուեցաւ Ճակատն առ Կողոնիաւ (ի Փոքր Հայս մօտ ի Սեբաս-տէ), եւ ի խառնուրդն առաջ քաջք ի զարմից Հայկայ եւ Սենե-քերիմայ ապրեցուցանէին զՎաղարշակ ի վտանգէ, եւ անկանի ան-ուէր Մորփիւղիկէս ի մերձակայ կառքին (յամի իբրեւ 140)[5]: Այսպէս ձգէին սահմանք Հայոց թագաւորութեան յԵփրատ գետոյ մինչեւ ցծովն Կասպիական, եւ ի Կուր գետոյ մինչեւ ցՄիջագետս Ասորւոց: Առա ուրեմն դէմ յանդիման քա-

1 Առ. [illegible]. յաւն. Յովս. Բ. Գլ. ԺԲ. եւ Յովհ. ԺՁ. 1, 2: Խոր. Խոր. Ա. Գլ. ԼԱ. էջ 127. ասէ «Յաջորդ հետէ (յԱղեքսանդրէ Մակեդոնացւոյ) մինչեւ ցթագաւորութիւնն Վաղարշակայ ի Հայս՝ ... չէգոյթ ինչ [illegible] ընդ. այլ [illegible] եղանէր [illegible] աշխարհիս»:

2 Տես Խոր. Բ. Գլ. Բ. էջ 155 եւ 156:

3 Խոր. Ա. Գլ. Ը. էջ 46:

4 Խոր. Բ. Գլ. Դ. էջ 158:

5 Խոր. Բ. Գլ. Ե:

զաւակացն Սելեւկեանց՝ սահմանեցաւ Մծբին (կամ Անտիոքիա Միգդոնեան) նորա թագաւորին, եւ մայրաքաղաք Տայոց աշխարհին կարգեցան հովանոց ամառայնոյ եւ որսոց տեղիք։ — Դադարէր այնուհետեւ մարտ պատերազմի ի Մակեդոնացւոց սահմանս, եւ դառնայր Վաղարշակ ի ներքին յօրինուածութիւնս տէրութեանն[1]։

Բայց զի ի վերայ տոհմայինն եւ հայրենատուր կարգաց եւ ժառանգական ազնուականութեան զամենայն կամէր ձեւել[2]՝ առաքեցաւ ի Մծբնայ Մար Աբաս Կատինա վարժ քաղդէացի եւ յոյն գրով՝ քննել եւ բերել զպատմութիւնս ազգին ի դիւանէն որ ի Նինուէ էր. եւ մատեան պատմութեանն այնորիկ եղեւ առաջին գանձատուն նորա, զորս եւ զնշան մի ի սիւնս հրամայէր դրոշմել[3]։

## 377

Զբնակիչսն ամենայն երկրին, որ իբրեւ ուրոյն ուրոյն տոհմք կային բաժանեալք ի միմեանց՝ իւրաքանչիւր իւրն նահապետական առաջնորդութեամբ՝ ժողովէր Վաղարշակ զաթոռովն իւրով ըստ յօրինուածութեան տէրութեանն Պարթեւաց եւ Պարսից[4]։

Ըստ այլ եւ այլ տոհմից եւ նահանգաց ի բազում՝ ի հարիւրաւոր՝ իսկ Նախարարութիւնս (կամ Ազատութիւնս) զերկիրն բաժանէր։ Նախարար (կամ իշխան, տէր, տանուտէր, նահապետ) մի եւեթ էր յիւրաքանչիւր նախարարական տոհմի (ոչ միշտ ժառանգութեամբ), իսկ այլ եւս արք գլխաւորք ի տոհմի անդ՝ անուանեալ կոչէին Սեպուհք, եւ արք նախարարական տոհմին՝ Տոհմիկք կամ Ազատանի, որոց իսպառ կային մշակութեամբ եւ զարմանիւք դարձ դարձ շինականացն։ — Էր նախարարացն տէրութիւն ի վերայ երկրին իւրեանց եւ դատաւորութիւն ի վերայ բնակչացն, եւ որպէս հաւանութեամբ է՝ իրաւունք կենաց եւ մահու, եւ զունդք զօրաց՝ զոր տանէր իւր նախարարն ի կոչ թագաւորին ընդ իւրովն զօրավարութեամբ։

Զկէսս ի նախարարութեանց անտի՝ առաւել անձկագոյնս կապէր ընդ աթոռոյ իւրում թագաւորն խնամութեան վասն երախտեաց գլխաւորացն նոցա՝ զոր ի պատերազմին արարին։

1. ԶՍմբատ Բագրատունի՝ ի զաւակէ Հրէից եկելոց առ Հրաչեայ ի Հայս՝ որ եւ ի սկզբանէ իսկ գալստեանն Վաղարշակայ մատուցեալ էր ինքնակամ զանձն ի ծառայութիւն նորա խորագիտութեամբ[5] յետ կացուցանելոյ տանուտէր տոհմին իւրոյ (Բագրատունեաց)՝ կացուցանէր ժառանգութեամբ յԱսպետութիւն, այս ինքն՝ լինել ազգաւ թագադիր ամենայն պայազատացն Արշակունեաց, մինչեւ չլինել իսկ օրէն ումեք թագ կապելոյ

1 Խոր. Բ. Գլ. Ե, Զ։
2 Տես Խոր. Ա. Գլ. Թ. եւ 48։
3 Խոր. Ա. Գլ. Ը։
4 Տես վերագոյն համար 347։
5 Խոր. Բ. Գլ. Գ. եւ 156։

380

Արտաշէս Ը. (111 — 86) որ ի պատանեկութեանն էր սիրելի յոյժ հաւուն իւրում Վաղարշակայ յարքունիս նորա ի Մըծբին, քանզի կայտառ իմն էր եւ հզօր[1], անբառնալի զթագաւորութիւնն Հայոց փոխանակ երկրորդական գահուն ի կարգ աւագութեան ի վերայ քան զթագաւորութիւնն Պարթեւաց։ Իսկ եւ իսկ տայր հատանել դրամ առանձինն զիւր պատկերն, քանզի իրաւունք դահեկանն հատանելոյ էր սեպհական իմն տէրութեան Պարթեւաց իբրեւ աւագագոյն աթոռոյ[2]. եւ տայր շինել իւր արքունիս ի Պարթեւաց աշխարհին, եւ այնպէս զԱրշական կամ զԱրշակ Ը. կամ Թ. որ ի ժամանակին թագաւորն էր յաշխարհի անդ՝ հաստատէր յիշխանութեանն իբրեւ ընդ իւրով ձեռամբ[3]։

Խաղաղայր այնուհետեւ թագաւորն պատերազմաւէր ընդ արեւմտաս հանել զօր անհնարին առնելով մարդաթափ զկողմն արեւելից եւ հիւսիսոյ աշխարհին իւրոյ. յանցս եւ յիջեւանս քաղքաց մարդաթափ կարկառ՝ նշան բազմութեանն թողոյր։ Յետ գրգռելոյ տերիմքը զամենայն Փոքրն Ասիա եւ ընդ նաւատորմիղ նաւուք զծովն Միջերկրական, եւ անցուցանելոյ զզօրսն յաշխարհն Յունաց եւ առաքելոյ զզօրս Ճարտարացն Յունաց (զԱկիւղեայ եւ զԱփիլինոսի Արեւտացւոյ) ի յունական քաղաքացն Ասիոյ եւ յՀելլադայ՝ ինքն մեռանի ի փախստի յիւրոց զօրաց ի ժամանակի խռովութեան իւրեք եւ ազգին որ ոչ ծանօթ է[4]։

Սակայն յոյժ հաւանութեան իմն թուի թէ զպատմութիւն այսր արշաւանին Արտաշէսի պարտ իցէ իմանալ այսպիսի ինչ օրինակաւ։ — Արտաշէս Ը. միաբանեալ ընդ Միհրդատայ Զ. Եւպատորայ արքայի Պոնտացւոց պրուամ տալ իսկ էր զդուստր իւր զԱրտաշամայ՝ կնութեան, որոշեցին բազմամարդ բանակօք զամենայն զՓոքրն Ասիա, յորն նաւամարտիկ նաւուք զծովն Միջերկրական, անցին ընդ Թրակիա՝ ի Մակեդոնիա, ի Դեկեիա եւ յԷլլադա (88)՝ ի ժամանակի ուր Հռոմայեցիք այն ինչ ի գլուխ հանէին զփոխանդամակից պատերազմ դաշնաւորաց եւ զՄարիոսեան եւ զՍուղեան աղմկաւն էին. մինչեւ հասեալ Սուղղա պաշարէր (87) ի քաղաքին Աթենացւոց զհասարակաց զօրն Արտաշէսի եւ Միհրդատայ՝ որ առ սոյն տագնապի թողուին զքաղաքն, եւ յետ երկուց ձախող ճակատուց առ Քաղկիսեա եւ Որքոմենեա ընդդէմ Սուղղայ՝ անցանէին այսրէն յԱսիա եւ Հռոմայեցիք զհետ նոցա։ Արտաշէս հարեալ յիւրոց զօրացն՝ ստիպէր Միհրդատ կալ դաշինս խաղաղութեան ընդ Սուղղայ (86)[5]։ Այս դէպք են զոր վասն նորին ժամանակի պատմեն պատմագիրք Յունաց եւ

1 Խոր. Բ. Գլ. Ը. եւ 175։
2 Խոր. Բ. Գլ. ԺԱ. եւ 180։
3 Անդ։
4 Խոր. Բ. Գլ. ԺԲ, ԺԳ։
5 Տես վերագոյն աւելի մանր՝ եւ 552 — 553։

Հռոմոց եւ մերն Մովսէս Խորենացի, բայց նոքա գրեն թէ զՄի-հրդատայ միայն, եւ սա գրէ թէ զԱրտաշէսէ միայն[1]։

Այսպէս անց այն աշխարհակալութիւն իբրեւ զփայլակն, եւ տապաստակ Յունացն կայր ի դուրս Հայոց աշխարհին՝ յետ ցրուե-լոյ տիրապան բանակին[2]։

## 381

Սակայն Տիգրան Բ. (86—36) նորին որդի՝ մեծ քան զհայր իւր, որ տուեալ էր ի մանկութենէ ի հրահանգս զինուց ի ձեռն Վարաժայ նահապետի Վարաժնունեաց որ հոյակապն էր եւ կա-րողն ի նետաձգութիւն[3], էր վաղ բարձակից հօրն թագաւորու-թեան յառաջ քան զարշաւանս նորա[4]։ Սա յետ փոխելոյ յետ զաւապատակն՝ զպատկերսն զոր առեալ բերէր հայր նորա յԵլլա-դացւոց աշխարհէն (զԴիոսի, զԱրտեմիդեայ, զԱթենայ, զՀե-փեստեայ եւ զԱփրոդիտեայ) հանդերձ քրմօք՝ զետեղեցուցանէր յարեւմուտս Հայաստան աշխարհին՝ ըստ ցանկութեան քրմացն[5]։ Բայց էին եւ այլ եւս ինչ պատկերք դից առաքեալ յառաջ քան զայն յԱրտաշէսէ ի Յունական կողմանց Ասիայ, յորս էր եւ անդ-րին Հերակղեայ յօրինեալ ի Սկիւղեայ Ճարտարէ զոր քուրմքն Հայոց Վահունիք առին կանգնեցին անհրաման յիւրեանց սեպ-հականին ի Տարօն։ Եւ յայն սակս իսկ ցասուցեալ ընդ նոսա Տիգրանայ՝ ընկեցաւ տոհմն նոցա ի պատուոյ քրմութեանն եւ դեւղն Աշտիշատ ուր պատկերն կանգնեալ էր՝ առաւ յարքունիս[6]։

Աստ եւ յայլ եւս ամենայն քաղաքս ուր պատկերքն եղան՝ յօրինէր Տիգրան մեհեանս բագնօք հանդերձ՝ պատուէր տուեալ նախարարութեանց մատուցանել զոհս եւ երկրպագութիւն, վասն որոյ եւ ի տագնապ մեծ անկանէր տոհմն Բագրատունեաց[7]։ Վաղ իսկ երբեմն ուրեմն աղերսեալ էր Վաղարշակ զնահապետն նոցա զՇամբայ Բագարատ՝ ստիպելով իմն զնա ի բաց կալ յօ-րինացն հրէութեան, բայց ապա թողեալ զնա ըստ կամաց[8], եւ յետ նորա նորին որդի Արշակ Ա. զերկուս յորդւոցն Բագարա-տայ նահատակեալ էր սրով ի վերայ հայրենի օրինացն, մինչեւ յանձն առնուլ միացելոցն ի շաբաթու հեծանել յորս եւ ի պա-տերազմունս, եւ զմանկունսն թողուլ անթլփատս, քանզի տակաւին անկին էին. բայց եւ Արշակ հրամայէր ամենայն նախարարու-թեանց՝ չտալ նոցա զդստերսն կնութեան թէ ոչ ուխտ պայմանի

1 Առայն եղէրի, քանզի եւ Յունացն եւ Հռոմայեցն մատենագիրք ճանաչեն եւ յայտնի առաջին Միհրդատեան պատերազմին՝ ըմբռնականութիւն Հայոց թագաւորին զոր Տիգրանն իսկ անուանեն՝ համարելով նմա ընդ այնր թագաւորի որ յերկրորդում Միհրդատեան պատերազմին օգնական էր նմա, եւ յայն սակս առն թագաւորել Տիգրանայ կանխագոյն (յամէ իբրեւ 95)։

2 Խոր. Բ. Գլ. ԺԴ. էջ 188։

3 Խոր. Բ. Գլ. ԺԱ. էջ 180։

4 Անդ։

5 Խոր. Բ. Գլ. ԺԲ. էջ 183. ԺԴ. էջ 188—189։

6 Անդ էջ 188 եւ 189։

7 Անդ էջ 189—190։

8 Խոր. Բ. Գլ. Ը. էջ 173—174։

